ՏԵՍՈՒԹԻՒՆ

# ՍԵՂԲԵՍՏՐՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ԵՒ

## Մ. ԽՈՐԵՆԱՑԻՈՅ ԱՂԲԵՐԱՑ

ԳՐԵԱՑ

Հ. ԹԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ



ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1893

# ՏԵՍՈՒԹԻՒՆ

# ՍԵՂԲԵՍՏՐՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ԵՒ

# Մ. ԽՈՐԵՆԱՑՒՈՅ ԱՂԲԵՐԱՑ

ԳՐԵԱՑ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ



ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1893

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ



ԵՂԲԵՍՏՐՈՍԵԱՆ պատմութեան, կամ լաւ ևս **Աւանդութիւն** (Légende) հայերէն թարգմանութիւնն՝ որ կը գտնուի Սոկրատայ պատմագրութեան այլ և այլ ձեռագրաց մէջ, արդէն 'ի վաղուց գրաւած էր իմ ուշադրութիւնը՝ Մ. Խորենացւոյ և Զենոբայ հետ ունեցած առընչութեամբք. բայց այն օրէն 'ի վեր երբ հայագէտն Ա. Կարրիէր յայտնեց [1], — համեմատութեամբ, — անոր յունահեա բնագիրն՝ իբրև նորագիւտ աղբիւր Խորենացւոյ Բ. Գրոց ՁԳ գլխոյն, աւելի ևս շահագրգիռ դարձաւ ինձ համար: Առաջին կէտով միայն, — եթէ ուրիշ շարժառիթք ևս չկնէին, — արժան էր հրատարակել զայն իբրև գործ Նախնեաց, յունարենէն ունեցած առաւելութիւնները կամ թերութիւնքը ցուցնելու աղագաւ: Բայց որովհետև յիշեալ մեծանուն գիտնականն՝ իր վերջին յօդուածովն ուրիշ նոր յայտնութիւն մ' ևս ըրաւ, — յեղափոխելու չափ զօրաւոր Հայոց պատմահօր և անոր պատմութեան ժամանակակիտին վերայ գիտնոց [2] կարծիքը. երկրորդ փափաք իսկ յայտնեց հրատարակուած տեսնել զայն, իբրև նպաստաւոր իւր արտայայտած կարծեաց: Ուստի այս կրկին պատճառ ունելով մեզ յորդոր, կու գանք սիրայօժար կատարելու այս ծառայութիւնս:

Հրատարակութիւնս, — յորում նպատակ դրած ենք ոչ միայն դնել դիմացէ դիմաց հայ և յունարէն բնագրերը՝ նշանակելով անոնց և ուրիշ գրչագրաց տարբերութիւնքը, այլ մանաւանդ քննելով Սեղբեստրոսի և Կոստանդիանոսի առեղծաբանութեանց հնագոյն աղբիւրքն, և ցուցնել Խորենացւոյ անոնցմէ միոյն աւելի՝ քան թէ Սոկրատայ թարգմանութեան հետ ունեցած աղերսը, — կարծեմ թէ, ընդհակառակն, Կարրիէրի կարծեաց աւելի աննպաստ՝ քան թէ նպաստաւոր արդիւնքներ յառաջ պիտի բերէ: Մենք այս գրութեանս դեռ ձեռք չի զարկած արդէն համոզուած էինք այս բանիս.

1. « Հանդէս ամսօրեայ » թիւ 7 Օգոստ. 1892:

2. Այսպէս հայագէտն Դօկտ. Վէտտէր կը գրէր իր մէկ թղթին մէջ, թէ Կարրիէրի գիւտէն վերջ այլ ևս չկարէ ընդունիլ Խորենացւոյ Պատմութիւնն իբր Ե դարու գործ:

*սակայն և այնպէս պէտի շանանք, – եթէ կարելի է, – խուսել որ և է սուանձին ծկտումներէ. որովհետև սկզբան խնդիր մ'է այս, և ոչ թէ անձնական պայքար. ճըշմարտին յայտնութիւնն է ինչպէս նորայն՝ այսպէս և իմ միակ նպատակն:*

*Սեղբեստրոսի ստեղծաբանութեամբ, – որուն հետ հակասական պարագայիւք և հակապատմական վէպերով միացած են նոյնպէս Կոստանդիանոսի, անոր հօր Կոստասայ Քլորոսի և մօրը Հեղինեայ արարուածներն, – 'ի վաղուց զբաղեցան քննասէրք և զբաղեցուցին զընթերցողս, ոմանք* **Բարոնիոսի**՝ *և այլք* **Ալէք. Նաթալիսի** *կուսակից լինելով: Բայց յամին* 1886 **Աբբայն Դիւշէն** *իր մեծագործ և բազմազանն հրատարակութեամբ* [1], *– յետ որոյ նախկին հրատարակութիւնը կորոյս իր նշանակութիւնը, – հմտալից և անաչառ զննութեամբք 'ի հիմանց ուսումնասիրեց սեղբեստրոսեան ստեղծաբանութիւնը, ոչ միայն շահեկան տեղեկութիւններ տալով անոր լատին* [2], *յոյն* [3] *և ասորերէն բնագրոց և անոնց հրատարակութեանց վերայ, այլ ցուցնելով հնագոյն աղբերքը, նոցա կիրառութիւնը, գրութեան մերձաւոր ժամանակը կամ ծագումը:*

*Հեղինակս՝ հայերէն թարգմանութեան բնաւ յիշատակութիւն չըներ. կ'երևի թէ դեռ տեղեակ չէր անոր գոյութեան: Բայց վերոյիշեալ եռալեզու բնագրոց վերայ եղած իւր և նախորդ գիտնոց աշխատասիրութեանց արդիւնքն այն եղաւ, ընդունել զլատիներէնն՝ իբրև բնագիր այլոց, հիմնեալ այն փաստերու վերայ, թէ նախ* **Սեղբեստրոսի Վարուց** *թէ՛ յունարէնն թէ՛ ասորերէնի, – պէտք ենք ըսել թէ և՝ հայերէնի, – գլխագրերն իրարմէ շատ կը տարբերին ձևով և պարունակութեամբ. իսկ լատիներէնի գլխագիրք առ հասարակ մի և նոյն ոճով և կրարու համաձայն կը ներկայացնեն զայն, բաց 'ի մի քանի համառօտութեանց և յաւելուածներէ: Բ. Բաց 'ի այն ընդհանուր երևոյթէն, – ըստ կարծեաց Դիւշէնի, – կան մասնական կռուաններ իսկ. այսինքն է լատիներէնի Յառաջաբանը՝ ձևով, լեզուական կազմակերպութեամբ և գաղափարաց արտայայտութեամբ յար և նման է այն երկու նամակաց, որք* **Հերոնիմեան Վկայաբանութեան** *իբրև ներածութիւն ծառայած են, և բանից զտութեամբ բոլոր այն ժամանակի գրուածներէն գերազանց է: Գ. Լատին* feria *բառի յոքնակի կամ եզակի գործածութեան անդրադարձութիւնն, որ յունին համար ըստ ինքեան անհասկանալի է. զի աստ կը գրուի* ἡμέρα πρώτη, δευτέρα, τρίτη, *և այլն. և ոչ թէ* feria prima, secunda, tertia, etc. *Դ. Յունական եկեղեցւոյ արարողութեան համաձայն չեն* **Տօնա-ցուցի***, հինգշաբաթի հանդիսաւորութեան և շաբաթ օրուան պահքի ծագման մասին տուած մեկնութիւններն. և հետևաբար յունի մի համար կարևորութիւն չէին կարող ունենալ, այլ հռովմէական եկեղեցւոյ և հռովմայեցւոյ մի քաջ կը յարմարին: Ե. Կապիտոլիոնի, Լատերանու, կոստանդիանոսեան և ուլպինեան տաճարաց, ինչպէս սրբոցն Պետրոսի և Պօղոսի վկայարանաց տեղագրական տեղեկութիւնքն իսկ կը ցուցնեն, թէ հռովմայեցի մէկն, և կամ գէթ Հռովմայ այցելու մի գրած էր զանոնք, զանց ընելով դեռ ուրիշ այնքան յիշատակարաններ, որք լատին վկայաբանութեանց և նոյն իսկ* Liber Pontificalis *ին մէջ ստէպ կը յեղյեղին:*

1. ***Liber Pontificalis***, texte, introduction et Commentaire, Paris T. 1. p. CIX–CXX.

2. *Որ ծանօթ է մակագրութեամբս* Vita Silvestri, *և կը գտնուի Միլանի ձեռագիրներէն մօտ յամն* 1475 *եղած հաւաքման Բ. հատորին մէջ, այսպիսի խորագրաւ:* Sanctorum sive vitæ Sanctorum Collectæ ex codicibus mss. Milan.

3. Surius, ***Vitae Sanctorum***. — Combefis, ***Illustri Christi martyrum triumphi***, Paris 1659. — Land, *Anecdota Syriaca*.

Դիւշէնի այս սրամիտ դիտողութիւնները՝ անտարակոյս լոտ բաւական զօրեղ փաստեր են եզրակացնելու, թէ սուրբ լատիներէնն աւելի հին է քան այժմեան յոյնն, ասորին և հայն, և թէ բաղդատութեամբ անոնց բնագիր ըլլալու գէթ երևոյթն ունի: Բայց թէ իրօք այդ կարծեցեալ լատին բնագրէն յառաջ Սեղբեստրոսի և Կոստանդիանոսի սահեղծարանութեանց ուրիշ աւելի հին յոյն կամ ասորի աղբերք եղած չե՞ն արդեօք, յորոց 'ի վերջկոյս Ե դարուն խմբագրուած ըլլայ լատիներէնն. այս է ահա մեզ համար մեծ նշանակութիւն ունեցող հարցն և բազմակնճիռ հանգոյցը, զոր Դիւշէնի հետ՝ անոր նախորդ և յետագայ գիտնականք իսկ գոհացուցիչ կերպով չլուծեցին ցարդ: Հանգոյց մի՝ որ Սեղբեստրոսի Վարուց հետ յինքն ծրարած է, — չգիտեմ ինչպէս, — նաև Խորենացւոյ պատմագրութեան Բ. Գրոց ՁԴ գլուխն և անոր հեղինակութեան զաղտնիքը: Սակայն լոտ իս այս հարցս հաւաստի և պատմական եղելութիւն մ' է, այնպիսի դիպաց և աւանդութեանց հետ կապուած, որոց հնութիւնն անժխտելի է. և մենք պիտի ջանանք մերովսան ակներև ընծայել զայն:

Սուքիաս վարդապետ Պարոնեան անցեալ տարի հրատարկած իր լուրջ յօդուածովն[1] ուզելով պաշտպանել Խորենացւոյ Պատմագրութիւնն իբր 'ի վերահաս վտանգէ, ախոյեան հանդիսացաւ Կարրիէրի. և ընդունելով հանդերձ գաղղիացի գիտնականին ըրած գիւտին և անկէց հանած եզրակացութեան ծանրութիւնն, այս միջոցս գտաւ ազատելու զԽորենացին, ըսելով, թէ « Ոչ թէ Խորենացին այդ Սեղբեստրոսի Վարուց յոյն բնագրէն քաղած է զիւրն, այլ թէ՝ եթէ ինքն և եթէ այդ յոյն կամ նախորդ լատին շարագրութիւնն՝ ուրիշ նախագոյն շարադրութենէ մը քաղած են, և անտի իսկ է նմանակցութեանց և ոչ — կատարեալ նմանակցութեանց — երևոյթք յիշեալ (այսինքն է Սեղբեստրոսի Վարուց և Մ. Խորենացւոյ պատմութեան Բ. Գրոց ՁԴ գլխու) հատուածոց մէջ »:

Ուղիղ է և շատ բնական բանիրուն վարդապետի սոյն դիտողութիւնը. բայց նա չապացուցուց, թէ որն էր արդեօք այդ հին շարադրութիւնը, յորում միայն կայացած էր բազմապատիկ դժուարութեան հետ՝ նոյնպէս անկէց յառաջ գալիք հետևութեան շահեկանութիւնն:

Սակայն երբ Կարրիէր՝ իր բնական համեստութեան մէջ գրուած երկրորդ յօդուածով՝ վերստին ապացուցանէր ելաւ Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգմանութեան հետ ունեցած աղերսներով, այն ատեն Պարոնեանի լռութեան հետ՝ զարմանքն ալ մեծ եղաւ, թէպէտ և Մխիթարեան Հարքս աղդէն 'ի Վաղուց Հայկազեան Բառագրքին և վերջերս եղած ուրիշ հրատարակութեանց մէջ ծանուցած էին ոչ միայն յիշեալ թարգմանութեան գոյութիւնը, այլ նոյն իսկ Խորենացւոյ հետ ունեցած անոր աղերսը. ուստի բոլորովին անծանօթ չէր այլոց, ինչպէս ենթադրած է Կարրիէր: Նաև այնուհետև ազգային թերթերու մէջ ոմանք ցաւով սրտի, իսկ այլք նորասիրութեամբ Խորենացւոյ պարտութեան և Գաղղիացւոյ յաղթանակի համբաւն հնչեցուցին ամենուրեք:

Ստ. Մալխասեան՝ **Խորենացւոյ Նոր ուղեցոյցը** մակագրեալ իր գեղեցիկ յօդուածովը[2] քննելով Կարրիէրի գիւտին և ցուցմանց զօրութիւնը, կը յայտարարէ, թէ « Մ. Խորենացի շատ անգամ անողոք քննութեան բովերէ անցել է, բայց այս անգամուան պէս վտանգաւոր դրից մէջ զանուած չէր երբէք: Խնդիրն այժմ այնպէս դրուած է,

1. Տես « Հանդէս ամսօրեայ », Թիւ 11, Նոյեմ. 1892, էջ 343:
2. Տես « Մուրճ » 1892 N. 12. էջ 1852:

որ եթէ մի ուրիշ յաջող լուծում չըգտնէ, մեզ պէտք է ստիպէ ընդունել այս երկուսից մէկը. կամ՝ որ Խորենացին Ե դարի մատենագիր չէ, այլ Զ. դարու երկրորդ կիսում, մինչև իսկ Է. դարու վերջերում ապրող մարդ. կամ եթէ Մ. Խորենացի մէկն յիրաւի ապրել է Ե. դարում՝ ուրեմն Խորենացւոյ պատմութիւն կոչուած գիրքը նորա գրածը չէ, այլ մի կեղծիք է Զ. կամ Է. դարերի »:

Մալխասեանց՝ յետ պարզելոյ իւր ընթերցողաց առջև Կարրիէրի յօդուածոց միտքը, կը ծանուցանէ, թէ այն յաջող ճանապարհն ինքը գտած է. որով պիտի պաշտպանէ զԽորենացի հակառակ Կարրիէրի, և լուծէ անոր հզրակացութիւնքը: Այս ճանապարհս է, — ըստ Մալխասեանի, — թէ Խորենացւոյ Պատմ. Բ. Գրոց ՁԳ երորդ գլուխը Մովսիսի վաւերական գործ չէ, այլ յետոյ ուրեմն ԺԱ. դարուն ներմուծուած է անոր պատմութեան մէջ:

Այս ենթադրութեանս լորև եզրակացուցիչ և հաստատուն ապացոյց մէջ կը բերուին երեք փաստեր. Ա. Խորենացւոյ Պատմ. Բ. ՁԳ գլխոյն մէջ Հայոց դարձին 'ի քրիստոնէութիւն և անոր անմիջապէս յաջակից դիպաց յիշատակութիւն չկայ բնաւ, մինչդեռ իր ժամանակին ըրած էր զայն Մովսէս. ուրեմն յետ ժամանակաց յապաւուած է այն գլուխն՝ անծանօթի մի ձեռքով, և անոր տեղ փոխանակուած է Սեղբեստրոսեան ստեղծաբանութիւնը, որով կազմուած է այժմու ՁԳ գլուխը: Բ. Խորենացւոյ պատմ. այն պակասը պէտք է որ զետեղուած ըլլար Բ. Գրոց ՁԲ և ՁԴ. գլխոց մէջ տեղ. զի պատմութեան կարգն իսկ զայդ կը պահանջէ: Գ. Խորենացւոյ նախկին ձեռագրաց մէջ եղած է հաւաստեաւ այն ՁԳ. գլուխն, որ կը բովանդակէր Հայոց դարձի պատմութիւնը. և այս բանս կ'ապացուցուի Ասողկայ պատմութեան[1] 60–62 էջերու համեմատութեամբ, որ Խորենացւոյ պատմագրութենէն քաղուած է, և ուր 'ի միջի այլոց կը յիշուին սրբոց Հռփսիմեանց գալուստն 'ի Հայս, Գր. Լուսաւորչի մուտն 'ի վիրապ, եւքն և վարդապետութիւնը:

Մալխասեանի այս գիւտս իսկ բոլորովին նոր է և հանճարեղ՝ հանգոյն գիւտին Կարրիէրի. բայց պէտք է յաւելուլ և զայս, թէ վերջնոյն հաւասար՝ յառաջնոյն կարծիքն ևս շատ և շատ դժուարութեանց կը բաղխի, և այնքան պիտի կարենայ նա վերականգնել զԽորենացի, որքան Կարրիէր սապալել համարեցաւ: Եւ յերաւի դիտելու ենք նախ, որ մէկ կողմէն դժուար է ընդունել, թէ այսպիսի ներմուծում մի տեղի ունեցած ըլլայ, — առանց բացառութեան, — Խորենացւոյ պատմագրութեան բոլոր ձեռագրաց մէջ. իսկ միւս կողմէն՝ որ բնաւ հետք մի մնացած չըլլայ ոչ Մովսիսի գրչագիրներէն միոյն և ոչ իսկ Ասողկէն յառաջ նախնեաց գրուածոց մէջ՝ այն հարազատ կարծուած ՁԳ. գլխէն: Բ. Նոյն իսկ Խորենացւոյ ՁԳ. գլխու Ա. պարբերութեան մէջ ուղղակի Տրդատայ հեթանոս եղած ժամանակի նշանաւոր մէկ դէպքին վերայ կը խօսուի, այն է Աշխադարայ դստեր Աշխէն տիկնոջ հետ ամուսնանալուն վերայ, և ոչ թէ քրիստոնեայ լինելուն: Ուրեմն եթէ այդ գլուխն յետոյ ուրեմն ներմուծուած ենթադրենք, այն ատեն նորա ներմուծողը շատ խեղճ դեր կատարած պիտի լինէր, յիշելով Տրդատէն տարիներ վերջ եղած Կոստանդիանոսի դարձը, և առանց բանաւոր պատճառի, զանց առնելով զՏրդատայն: Իսկ եթէ Խորենացւոյ ընծայենք այդ գլուխն, այն ատեն դիւրհասկանալի կ'ըլլայ այն. վասն զի ասա Մովսիսի միայն նպատակն էր յիշեալ երկու վեհապետաց հարսանեաց զուգադիպութիւնը պատմել, և ոչ թէ Տրդա_

1. Տպագր. Պետրբուրգի, 1883:

սայ պարծը, զոր Ագաթանգեղոս վուլի պատմած էր իր ամենուն ծանօթ գործին մէջ, զոր և Խորենացին կը յիշատակէ 'ի վերջ ՁԹ. գլխուն: Մովսիսի պատմագրութեան այլ և այլ տեղեաց մէջ ըրած ազդարարութիւններէն իսկ գիտենք, թէ նա այն կէտերուն վերայ զոր Ագաթանգեղոս պատմած էր՝ ինքը լռութիւն կը պահէ. և հոն կը նոխանայ, ուր նա լռած է. — օրինակի աղագաւ Հռիփսիմեանց ազգաբանութեան և ուղեւորութեան, ինչպէս նաև Նունեայ և Մանեայ պատմութեան, Տրդատայ գահակալութեան տարեթուին, անոր և Գրիգորի մահուան մասին: Գ. Խորենացւոյ սղաքան զրչով միայն կարէլին այնքան բազմազան նիւթեր՝ մի քանի տողերու մէջ համառօտուիլ այնքան ճարտարութեամբ:

Իսկ նկատմամբ Ասողկայ պատմութենէն մէջ բերուած միջին հատուածն, — զոր Մալխասեան՝ Խորենացւոյ անյայտացած գլխէն քաղուած կը համարի, — կարէր ըստ իս կամ ուղղակի Մովսիսի ընծայուած Հռիփսիմեանց ճառէն առնուած ըլլալ, ուր որոշակի կը յիշուին թէ Հռիփսիմեանց գալուստն 'ի Հայս, թէ Լուսաւորչայ վարդապետութիւնն և Հայոց դարձը. և կամ յԱգաթանգեղայ: Վերջին կիտի անհնարութիւնն և յառարկողաց պատասխանին թէ և տուած է Մալխասեան, հաստատելով հնգօրեայ [illegible] պահքի յիշատակութեան վերայ, որով Ասողկայ այդ տեղին կը տարբերի Ագաթանգեղոսի « Վաթսուն և հինգ օր » բացատրութենէն, և միայն Մովսիսի անյայտացած գլխէն պէտք է որ ուղղակի առնուած լինի: Սակայն դիտելով որ Ասողկայ այն տեղին գրեթէ բառ առ բառ նոյն է Զենոբայ մէկ տեղւոյն[1] հետ, զոր Սեղբեստրոսի վարուց հայ թարգմանիչն իսկ մէջ կը բերէ, և Հայոց Տօնապատճառներու մէջ իսկ կը յեղյեղուի. և որովհետև Զենոբ Ագաթանգեղոսէն փոխ առած է իւր այդ տեղին և անոր անունն իսկ կը յիշէ, ուրեմն Խորենացւոյ կորսուած գլուխ մ' երազելու Կարլիէրի դէմ զօրաւոր փաստ մի չկարէ լինել: Ուր թողունք որ Ասողկայ այդ միջին հատուածին ոճն իսկ կը տարբերի առաջին և վերջին հատուածոց ոճէն, յորս զգալի է երկուստեք եղած նմանութիւնն:

Դ. Ասողկայ այս բացատրութիւնն իսկ, թէ « Եւ 'ի [illegible] (թագաւորութեան) [illegible] սուրբ կուսանքն Հռիփսիմեանք և Գայիանեանք վասն աստուածպաշտութեան հալածեալք 'ի Դիոկղետիանոսէ, եկեալ 'ի Վաղարշապատ քաղաք՝ զմարտիրոսական չարչարանս ընկալան 'ի Տրդատայ արքայէ », աւելի Ագաթանգեղայ՝ քան թէ Խորենացւոյ պատմութեան աւանդածին համաձայն է. վասն զի վերջինս՝ վերոյիշեալ ճառին մէջ Տրդատայ գահակալութեան տարեթիւը Դիոկղետիանոսի գահակալութեան յերրորդ տարին դնելով կը լռէ. իսկ առ Ագաթանգեղ՝ ընդհակառակն, Հռիփսիմեանց 'ի Վաղարշապատ գալն և նահատակուիլը՝ Գրիգորի վիրապէն ելլելու տարւոյն մէջ կը դրուի, որ համդիպեցաւ Տրդատայ գահակալութեան 15 երորդ տարին, — մուտքը առաջին տարւոյն մէջ նշանակելով:

Մալխասեան՝ Խորենացւոյ Բ. Գրոց ՁԹ գլխոյն մէջ Կոստանդիանոսի և Հեղինեայ համար ըսածը՝ Հռիփսիմեանց ճառի մէջ աւանդածին հակասական համարելով, անտի ևս առաջնոյն անհարազատ ըլլալը կը ծեռնարկէ: Սակայն այդ իսկ զօրաւոր

1. Ուր կ'ըսուի. " Եւ նորա ելեալ ('ի վիրապէն) ժողովեաց զնոսա առ ինքն. և հինգ օր թողու զնոսա անսուաղ առաջի իւր կալով, լսելով զքարոզութիւն վարդապետութեան նորա: Այս առաջին պահք եղան յաւուրս սրբոյն Գրիգորի ... զոր և Առաջաւորք կոչեմք ":

կուսան մի չէ. որովհետև ոչ Հռիփսիմեանց արքայազուն ըլլալէն Կոստանդիանոսի արիւնակից ըլլալ կը հետևի, և ոչ իսկ Կոստանդիանոս Հեղինեայ պոռնկէն ծնանելովն Կոստասայ կամ կայսերական որդի ըլլալէն կը դադրի. հետևաբար այն երկու գրուածոց մէջ իրական հակասութիւն չկայ ինչպէս կը կարծուի:

Հանդերձ այսու ամենայնիւ Մալխասեանի գտած միջոցը կարող է լինել եթէ ոչ վերջին, այլ անտարակոյս զօրեղ մարտկոց մի զԽորենացին պաշտպանողաց, թէպէտև անբաւական առ 'ի տալ նմա յաղթանակել: Բայց մենք անհրաժեշտ հարկ մի չենք տեսներ զԽորենացին անդամհատելով պաշտպանել. վասն զի Մովսէսի պատմագրութեան երկբայութեանց ենթարկուած գլուխները՝ եթէ ամէն անգամ իբրև անհարազատ 'ի բաց բառնային ք, այն ժամանակ անոր սեփական բան չպիտի մնար. և իրօք ի՞նչ մնաց Գուտշմիթի քննադատութենէն ազատ: Ուստի մենք կ' ուզենք իւր պատմական ամբողջութեամբը ճակատեցնել զնա ընդդէմ ախոյենից. այսինքն է ընդունելով անոր պատմագրութեան Բ. ԶԳ գլուխն իբրև հարազատ գործ, թէև տգէտ ընդօրինակողաց ձեռքերի ուրեք ուրեք աղաւաղած ըլլան զայն: Խորենացին հայկական պատմաբանից հսկայն է և հնութեանց գանձ. և եթէ տոկաց տևեց տարիներ յառաջ տևտոնեան ծանր հարուածոց, նոյնը դիւրաւ չպիտի ընկճի նաև քաջակորով Նորմանի շողացուցած սայրասուր սլաքի ներքև:

Այս նպատակաւ պիտի ջանանք ցուցնել Ա. թէ Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի ստեղծաբանութիւնք՝ մինչև ցարդ կարծուածէն շատ աւելի հին են, և յարևելից առած իրենց նախկին ծագումն և ծնունդը: Բ. Թէ Ե. դարուն վերջին քառորդին հազիւ ուրեմն տարածուեցան մինչ 'ի Հռովմ և 'ի սփիւռս արևմտեան ազգաց: Գ. Թէպէտև այս ժամանակէս յառաջ 'ի գործածութեան էին արևելեան և արևմտեան սահմանաց մէջ, մերթ վիպասանութեան և մերթ վկայաբանութեանց ձևով, բայց անոնցմէ իւրաքանչիւրն դեռ առանձին ունէր իր գոյութիւնը. իսկ Զ. դարուն սկիզբը հազիւ ուրեմն խմբագրուեցան 'ի մի, քաջ լատինագէտ յոյնի մի ձեռքով, յորում ժամանակի նշանաւոր փոփոխութիւններ ևս կրեց, և ընդունեց իր մէջ ընդարձակ յաւելուածներ լատին եկեղեցւոյ յայնժամու արարողութեանց և կատարուած բարեկարգութեանց համաձայն: Դ. Թէ Կոմբեֆիսիոսի հրատարակած յունարէնը թէպէտև բնագիր չէ, այլ թարգմանեալ 'ի լատինէ, սակայն ունի ինչ ինչ 'ի հնագոյն յոյն աղբերաց: Ե. Թէ հայերէնը հաւատարիմ թարգմանութիւն չէ 'ի յունէ, այլ պարզապէս անոր հետևողութեամբ եղած զատ խմբագրութիւն մի, և գործածած է այնպիսի աղբիւրներ՝ զորս յոյնը չէր ճանչնար: Այն բազմաթիւ յաւելուածներն և յապաւումներ, փոխադրութիւնք ամբողջական էջերու, խուռն տարբերութիւնք բանից և անուանց, զորս քննած և պիտի նշանակենք՝ ըսածնիս լիովին կը հաստատեն: Զ. Թէ Խորենացի ոչ Սեղբեստրոսի Վարուց հայեցի թարգմանութիւնը կը ճանչնար և ոչ իսկ կարէր անոր բանաքաղ կամ բանագող լինել, այլ ընդհակառակն անոր աղբերք թէ և համառօտ և միակողմանի, բայց մէկէն աւելի էին և ընտիր: Սակայն անոր գործածած յոյն բնագիրը, — գէթ Կոստանդիանոսի պատմութեան մասին, — իւր առջև ունեցած է նաև հայ թարգմանիչը, որուն լեզուն և գրիչը Մովսէսի լեզուէն շատ տարբեր և ստոր են: Է. Թէ հայերէն թարգմանութիւնն եղած է Կարրիէրին ենթադրած ժամանակէն շատ ետքը, եթէ Փիլոնի Տիրակացւոյ ևս հարկ ըլլայ ընծայել Սոկրատայ պատմութեան երկրորդ կամ նոր թարգմանութիւնը, զի այնպիսի ոճեր և ասացուածներ 'ի գործ ածուած են հոն, զորս Ժ դարէն վերջ եկող գրութեանց մէջ միայն կարելի է գտնել: Իսկ Սեղբես-

տրոսեան սաեղծաբանութեան ներմուծումը ԺԱ – ԺԲ դարուց մէջ կատարուած է հաւանօրէն, և այն խսկ Սոկրատայ նոր թարգմանութեան և Յայսմաւուրաց մէջ միայն. իսկ հին թարգմանութիւնը, – որ կը գտնուի Երուսաղեմայ ձեռագրի մի մէջ, և որոյ գոյութիւնն ստուգեցինք ժամանակաւ 'ի վանս դրկուած մի քանի թերթ ընդօրինակութեան համեմատութեամբ, – չի պարունակեր Սեղբեստրոսի Վարքը: Դիտելու ենք և այս, որ յիշեալ դարերէն յառաջ ոչ ոք 'ի տոհմայնոց յառաջ բերած է երբէք հաւատուածս ինչ Սեղբեստրոսի Վարքէն, ըստ հայ թարգմանութեան, այլ Միքայէլ Ասորին, – որ յիշեալ դարերէն վերջն է, – կը յիշէ զայն՝ ասորի հեղինակէ մ'առնելով, ուրուն անունն և ժամանակը ծանօթ են արդէն: Ը. Կարրիէրին եզրակացութիւնը հայերէն թարգմանութեան հին, այն է, Ե դարուն եղած ըլլալն՝ պարզ ենթադրութեան մի վերայ հաստատուած են, և չկարեն լինել յամենայն դէպս իբրև ապացուցեալ ճշմարտութիւն մի: Այս մասին՝ մեծարոյ գիտնականն իսկ վերապահութեամբ միայն յայտնած է իր միտքը, որ յայտնի ապացոյց է անոր ճշմարտասիրութեանը:

Այս ընդարձակ ծրագրիս համաձայն պէտի լինենք մեր հրատարակութիւնը. բայց առաջարկեալ ծանր խնդրոց յաջող լուծումն սալու համար, համառօտիւ պէտի քննենք, – ներածութեանս մէջ, – նախ Սեղբեստրոսի վարուց աղբիւրներն, ապա ջանալ մերովսանն ապացուցանել վերոյիշեալ կէտերը: Բայց նախ պարտք կը համարիմ ծանուցանել, թէ բաց 'ի Դիւշէնի մեծագանձ հրատարակութենէն, – որոյ անունն և տեղին կանխելով ծանուցինք, – ուրիշ ծանօթ գիտնականի մի, այն է Արթուր Լ. Ֆրոթինկհամի փոքրիկ՝ բայց հմտալից գրուածքն [1] ևս հասաւ ինձ յօգնութիւն, – իմ ազնիւ բարեկամացս ձեռնտուութեամբ, – որոյ խորագիրն է. L' Omelia di Giacomo di Sarug, sul Battesimo di Costantino imperatore, tradotta ed annotata. Արդ՝ իրենց տեսակին մէջ մին քան զմիւսն գերազանց այս երկու հրատարակութիւնքս՝ իրենց ամփոփ պարունակութեամբը մեծ դիւրութիւն ընծայեցին ինձ:

Սեղբեստրոսի ստեղծաբանութեան աղբիւրները լաւ ուսումնասիրելու համար՝ երեք դասաւորութեամբ կը վերածենք զայնս. Ա. Բիւզանդական կամ յոյն աղբիւրներ: Բ. Լատին կամ արևմտեան: Գ. Ասորա – հայ – արաբական:

Արդ՝ ուշի ուշով քննելով բիւզանդական հնագոյն աղբերքը, կը տեսնենք, որ նոքա Սեղբեստրոսի Գործերէն յառաջ՝ Կոստանդիանոսի արարուածներով կամ պատմութեամբ սկսած են աւելի զբաղիլ. և ապա ժամանակի և դիպաց բերմամբ զանոնք իրարու հետ զուգած են: Զոսիմոս [2] հեթանոս պատմագիրն, որ ծաղկեցաւ և գրեց հաւա-

1. Որ հրատարակուած է 'ի Հռոմ յամին 1882, և այն քաղաքի թագաւորական Ակադեմիայի գործոց մի մասը կը կազմէ:

2. Հին և նոր մատենագիրք իրարու անմիաբան կ'ընթանան այս պատմագրիս ճիշդ ժամանակակէտն որոշելու մէջ: Ոլիմպիոդորոս՝ յամի տեառն 410 – 425 միջոցին կը դնէ: Հենրիկոս Վալեսիոս Սուիդասայ հետևելով՝ Անաստաս կայսեր ժամանակակից կը համարի զնա: Պրոկղոս Դիադոքոս՝ դաստիարակ կ'անուանէ իրեն. և Ռայտէրմայր՝ 431–591 կը հասցնէ զնա: Սակայն մենք երկու նշանաւոր յիշատակութեանց վերայ հիմնուած, զոր կ'ընէ նա ինքն Զոսիմոս, 410–431 ծաղկած կը համարինք զնա: Արդ՝ նա իր Գ գրոց ԼԳ գլխում և Դ գրոց ԾԹ գլխում կ'ողբայ իր ժամանակի բիւզանդական կայսրութեան վիճակն, ըսելով, թէ բարձեալ է հինաւուրց զօրութիւնն. նահանգներէն ոմանք բարբարոսաց իշխանութեան ներքև ինկած են, և ոմանք ամայացած: Այժ, այս վիճակիս հասաւ արևմտեան կայսրութիւնը կամ Ոնորիոսի և Արկադիոսի մանուկ թագաւորաց ժամանակ, և կամ փոքր Թէոդոսի, երբ Ալարիկ և Ռադագայիս մէկ կողմէն Գթաց

նօսէն, յամի Տեառն 410–431, իր պատմագրութեան վեց Գրքերը, նախ Բ. Գրոց Է. գլխուն մէջ խօսելով զՄեծէն Կոստանդիանոսէ, կ'ըսէ, թէ նա **պոռնիկ կնկանէ** մի ծնեալ էր, և կը ձկտէր ձեռք բերել **իր հօրը** Կոստասայ Քլորոսի թագաւորութիւնը: Մի և նոյն գրոց Թ. գլխուն մէջ ծանուցանելով Կոստասայ մահը և անոր իշխանութեան թեկնածուները, կ'ըսէ, թէ ոչ ոք անոր հարազատ որդւոցմէ արժանի դատուեցաւ ա_նոր յաջորդելու. այլ յուսով պարգևաց ընտրեցին մեծամեծք զԿոստանդիանոս, որ ոչ էր ծնեալ 'ի պատուաւոր կնոջէ: Իսկ նոյն գրոց ԻԹ. գլխուն մէջ կը ծանուցանէ մեզ Կոստանդիանոսի մօր **Հեղինեայ** անունն ևս, – Կոստանդիանոսի 'ի Հռովմ երթալն, – **տրիբունան** կախարդաց անձնատուր ըլլալը, – ընտանի թերափներն (lari) իրեն առ_նուլը, – կինն և որդին սպաննելը, – մաքրուելու համար քրմաց տուած խորհուրդն արհամարհելն, – Սպանիայէն 'ի Հռովմ եկած **Եգիպտացի առնէ** միջոցով դառնալն 'ի քրիստոնէութիւն և սրբուիլը, – Կապիտոլիոնի մէջ տօնս ուրախութեան կատա_րելն, և հուսկ հեթանոսական տաճարներ աւերելը, այլովք հանդերձ:

Մէջ բերենք բնագրի այդ երեք տեղիքն ևս, ըստ լատիներէն թարգմանութեան Բ. Գ. Նիեբուրի [1]. « Ac Diocletianus quidem annis tribus post mortuus est. Qui vero iam facti erant imperatores Constantius et Maximus Gallerius etc. *Constantinus natus ex consuetudine mulieris parum honestæ, et quæ non in manum imperatori Constanzio legitime convenisset*, iamdudum cum animo suo imperio cogitans, etc... ad *Constantium patrem proficiscendum, qui apud nationes transalpinas erat, et in Britania* plerumque vivebat ». Երկրորդ տեղին. « Cumque contingeret, *ut Constantius imperator eodem tempore de vita decederet: neminem prætoriani milites ex legitimis ipsius liberis idoneum regno iudicarunt; sed Constantinum ad hoc aptum videntes*, simulque spe magnificarum largitionum erecti, *Cæsaris ei dignitatem tribuerunt; cujus imagine Romæ pro more exhibita*, etc... Constantino quidem ex animi sententia conatum suum succedere, *qui muliere non matrona genitus esset; se vero talis imperatoris filium, neglectum iacere, paternum* imperium obtinentibus aliis », etc... Երրորդն այս_պէս. Postquam universum imperium ad unius Constantini potestatem rediisset... et patritis ad huc sacris utebatur, non tam honoris religio-

հրոսակներով, միւս կողմէն ալ Գայինաս յաւեր յապականութիւն դարձուցին զայն: Անաս_տասայ ժամանակ ևս տկարացաւ, բայց այս առաջին անգամ չէր և Զոսիմոս չէր կրնար բաղդատել նախնի ժամանակաց հետ: Բ. Զոսիմոս կայսերաց պատմութիւնը կը հաս_ցընէ ցամն 410, այսինքն է Ոնորիոսի վեցերորդ և Կրտսեր Թէոդոսի երրորդ տարին, և հոն կը դադրեցնէ: Ուստի քանի որ նա ուրիշ պատճառ չի ցուցներ այնպիսի դադար_ման, մենք կարենք եզրակացնել, թէ գուցէ նոյն իսկ այդ ժամանակ կտրուած ըլլայ նորա կենաց թելը, կամ գրիչը դադրած:

Գ. Զոսիմոս Սիրիանոսի տաղից ներբողը կ'ընէ իր երկասիրութեանց մէջ. իսկ Սի_րիանոս 410–431ի ժամանակ գրած է զանոնք. ուրեմն Զոսիմոսի խօսքն եթէ կեն_դանի Սիրիանոսի վերայ է, նա ինքն և 431ին մօտեր պէտք է որ ապրած լինի: Դ. Սո_զոմէն իսկ, որ մօտ յամն 439 գրեց իր պատմագրութիւնն և ընծայեց Փոքր Թէոդո_սի, Ա. Գրոց Ե. գլխուն մէջ Զոսիմոսէն հատուած մի մէջ կը բերէ Կոստանդիանոսի մասին և անոր հերքումը կ'ընէ:

1. Տես. Edit. Bonnæ 1837.

nisve causa, quam necessitatis; quo fiebat ut et *hariolis fidem haberet*, expertus vera *eos predixisse de rebus omnibus* quas feliciter gessisset, at ubi Romam venit, omnis arrogantiæ plenus, ab ipso *lare* sibi sumendum impietatis exordium putavit, etc... qumque Constantini mater Helena tantam calamitatem ægro ferret animo et intolerabilem ex cæde iuvenis dolorem perciperet, quasi consulans eam *Constantinus malum majori sanavit*, etc... et præterea contemptæ sacramentorum religionis, *ad flamines accendes admissorum lustrationes poscebat*. Illis respondentibus non esse traditum lustrationis modum, *qui tam fæda piacula eluere posset*, *Egyptius quidem* [1] *ex Hispania Romam delatus palatinisque* mulierculis familiaris factus, et *ad Constantini colloquium admissus*, *sententiam doctrinæ Christianorum habere vim abolendi quodqunque peccatum confirmavit* », etc.

*Հոս աւելորդ կը համարինք քննել, թէ ստո՞յգ են արդեօք Զոսիմոսի՝ Կոստանդիանոսի համար ըսածները. այլ այսչափս ակներև կը տեսնուի, թէ հեթանոս մատենագրիս աւանդածները սերտիւ կապուած են Կոստանդիանոսի հնագոյն կենսագրութեան մի հետ, որ Ցակ. Սրճեցւոյն ևս ծանօթ էր, ինչպէս և մերոյս Խորենացւոյ, — զորս յետոյ պիտի տեսնենք: — Դիւրէն՝ Զոսիմոսէն ծագած չի համարիր Սեղբեստրոսի ստեղծաբանութիւնը: Այս ըստ իմիք ճշմարիտ է. վասն զի պատմագրիս քով Սեղբեստրոսի ոչ անուան յիշատակութիւն կայ և ոչ իսկ անոր գործոց մանրամասնունքն՝ հանդերձ կայսեր մկրտութեամբը: Սակայն Զոսիմոսէն մէջ բերուած տեղիքը ոչ միայն չեն մերժեր զայն, այլ մանաւանդ Կոստանդիանոսի դարձի պարագաներով կը հաստատեն իսկ: Զոսիմոսի աւանդածները շատ աւելի պատմական են, քան թէ Սեղբեստրոսի Կենսագրութիւնը, որ բոլորովին հակապատմական և հակաժամանակագրական վիպասանութեան կերպարանք առած՝ է քրիստոնէի մի գրչի ներքև: Վերջինս հակառակ Եւսեբեայ, Սոկրատայ և Նմանեաց, բոլորովին 'ի բաց թողուցած է Կայսեր պատմական մկրտութեանը, 'ի Նիկոմիդիա, — Արիանոսաց դէմ ունեցած հակառակութեանն համար. — Իսկ Զոսիմոս, ընդհակառակն, միայն Կոստանդիանոսի նախկին դարձն և սրբուիլն 'ի մեղաց կը յիշէ, Եգիպտացւոյ յորդորմամբ, առանց մերժելու անոր 'ի Նիկոմիդիա կատարուած մկրտութիւնն և դրօշմ ընդունելը: Շատ աւելի ճիշտ է և բանաւոր Զոսիմոս, երբ կ'աւանդէ, թէ Կոստանդիանոս իւր գործած եղերանց համար և 'ի խայթէ խղճին դարձաւ քրիստոնեայ, և այնու յուսաց քաւել իւր բարոյական հիւանդութիւնը, քան Սեղբեստրոսի* **[illegible]** *հեղինակն, — որ ուզելով ծածկել քրիստոնեայ Կայսեր յանցանքը, երևակայեալ բորոտութիւնն հնարած է՝ իբր 'ի պատուհաս յԱստուծոյ: Ցակ. Սրճեցին՝ ոչ միայն « գերեաց (քրիստոնէից) առաջնորդի » յիշատակութեամբ, այլ նոյն իսկ Կայսեր բորոտութեան այլաբանական նկա-*

1. *Զոսիմոսէն յիշուած եգիպտացին, որ Սպանիայէն 'ի Հռոմ եկած, Կոստանդիանոսի արքունեաց մէջ մուտ գտած և կայսեր դարձին պատճառ եղած է, անտարակոյս* **Ոսիոս** *մեծանուն եկեղեցականն է, որ Նիկիոյ Ա. ժողովքին մէջ նախագահ ևս բազմեցաւ (տես Սոկրատ* **[illegible]** *Ա. գլ. ԼԱ)։ Այս բանս դեռ աւելի որոշ պիտի տեսնուի Սրճեցւոյ ճառին մէջ, ուր « Առաջնորդ գերեաց կամ քրիստոնէից » կոչուած է — զատ 'ի Սեղբեստրոսէ, — և կայսեր դարձի պատմութեան մէջ իբրև առաջին և ամենամեծ դեր խաղացող ներկայացուած:*

րագրութեամբը՝ Զոսիմոսի աւանդածը կը հաստատէ: Ուրեմն այս ակն յայտնի վկա-յութեանց հանդէպ այլ ևս չենք տարակուսիր եզրակացնել, թէ **Զոսիմոս ինքն չէ նախ-կին հեղինակ Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի Պատմութեան, այլ անշուշտ ունեցած է իր դիմաց Դ. դարու հեղինակութիւն մի, յորմէ այն համառօտ տեղեկութիւնները միայն քաղած է, որք իրեն համար պատմական արժէք ունէին, և կամ նպաստաւոր էին իր հեթանոսական դի-տաւորութեան. և թէ այս հեղինակութիւնս արևելքի մէջ և արևելեան լեզուով գրուած էր**:

Սոզոմէն՝ որ 439ին մօտերը գրեց իր պատմագրութիւնը [1], նախ իր առաջին գրոց Բ. գլխուն մէջ կը յիշէ [2] զՍեղբեստրոս իբրև նշանակելի եպիսկոպոս Հռովմայ առ կե-սարութեամբ Կոստանդիանոսի և Կրիսպեայ: Գ. և Դ. գլխոց մէջ կը պատմէ անոր Մաքսենտիոսի հետ առաջին անգամ պատերազմած ժամանակ խաչի նշանին երևու-մը, — քահանայից մեկնութիւն ուզելը, — զօրքը խաչը Տէրութեան նշան, — կամ ըստ Խոր. **Սեգնան** = σύμβολον ընելն և յաղթութիւնը: Ե. գլխուն մէջ յառաջ կը բերէ հելլենաց վաղեմի այն զրոյցը, յորում գրեալ էր, թէ Կոստանդիանոս ապօրի-նաւոր ժառանգ էր թագաւորութեան, — իր ազգականները սպաննելէն վերջ իր յան-ցանքը քաւելու համար **Սոպատրոս** պղատոնական իմաստասիրին խորհուրդ հար-ցուց, թէ կա՞յ արդեօք քաւութեան միջոց մի, և երբ ժխտողական պատասխան ընդունեցաւ, այն ատեն դիմեց եպիսկոպոսաց, որք խորհուրդ տուին մկրտութեամբ սրբուիլ:

Աւելորդ կը համարինք Սոզոմէնի այս վերջին տեղին արտագրել. զի բառ առ բառ Զոսիմոսի մէջ բերուած տեղեաց հետ նոյն է, զորս համառօտելով մէջ բերինք. այլ դիտել կու տանք միայն, թէ Սոզոմէն կամ ուղղակի Զոսիմոսէն առած է, և կամ ա-նոր հնագոյն աղբերէն: Ցիրաւի նորա այս խօսքերն իսկ լսածնիս կը հաստատեն. « Scio quidem *gentiles* (յոյնն Ἕλληνες) vulgo narrare solitos » etc. Եւ անդէն կը յաւելու. « Verum hæc mihi videntur esse conficta ab illis, qui Christianam religionem vituperare student ». Իսկ այնպէս կ'երևի այս տեղ-ւոյս ամբողջութենէն, թէ Սոզոմէն Սոպատրոսի տուած խորհուրդի մասին միայն կ'ընդդիմաբանէ Զոսիմոսի, և ոչ թէ Կոստանդիանոսի ծննդեան համար աւանդածին, որ իւր գրչագիրներէն ոմանց մէջ իսկ կար այնպէս, ըստ ծանօթութեան հրատարա-կողաց. մանաւանդ թէ իրմէ աւելի հնագոյն պատմագրին, — այն է Եւսեբիոսի [3] քով, — ուսկէ առնելով Հերոնիմոս [4] մէջ կը բերէ այսպէս. « Constantinus decimosexto imperii anno diem obiit in Britannia Eboraci, postquam *filius ejus Constantinus ex concubina Helena procreatus regnum invadit:* quarto autem persecutionis anno Constantinus regnare orsus ».

1. Edit. Henr. Valesii, Augustæ Taurinorum 1797.
2. Ըսելով " Consulibus Crispo, et Constantino Cæsaribus, Romanæ quidem ecclesiæ Silvester Præsulatum gerebat ".
3. Եւսեբիոսի մեզի ծանօթ գործոց մէջ բնաւ չենք գտներ այդ տեղեկութիւնը Կոստան-դիանոսի ապօրինաւոր ծննդեան վրայ. Հերոնիմեան Մեկնութեան հրատարակիչք ևս բան մի չեն զուրցեր, թէ ինչպէս կամ ուստի՞ առած է զայն Հերոնիմոս: Շատ հաւանա-կան է կարծել, թէ Կեսարացի երկդիմի պատմիչն և ժամանակագիրը Կոստանդիանոսի մահուանէն վերջ այդպիսի բան մ'ալ կարող եղած ըլլայ գրել. այսպէս նաև 'ի Նիկոմի-դիա կատարուած ուրիշ խորհուրդ մի՝ մկրտութեան տեղ առած:
4. Տես 'ի Մեկնութեան անդ Eusebii Cæsaren. Cronicon.

Հինգերորդ դարու յիշատակարան մի, այն է Կ. Պոլսոյ Ս. Պօլիեւկտոսի եկեղեցւոյ մէջ եղած միւսիոն որմնանկարը [1], զոր կանգնած էր արեւմտեան Կայսեր (յամին 472) Ոլիբրիոսի դուստրն Յուլիանա Անիկիա, կը ներկայացնէր նաեւ Կոստանդիանոսի կայսեր վաղեմի մկրտութեան սրբարուածն եւ այսպէս.

"Ενθ' ἵνα καὶ γραφίδον ἱερῶν ὑπὲρ ἄντυγος αὐλῆς
ἔστιν ἰδεῖν μέγα θαῦμα, πολύφρονα Κωνσταντῖνον,
πῶς προφυγὼν εἴωλα, θεημάχον ἔσβεσε λύσσην,
καὶ Τρίαδος φάος εὗρεν ἐν ὕδασι γυῖα καθήρας.

Դիւշէն [2] առանց մերժելու անոր Կոստանդիանոսի ստեղծաբանեալ մկրտութեան հետ ունեցած աղերսը, պատմական մկրտութեանն 'ի նպաստ աւելի հաւանական եղած կը համարի այս խօսքերս, բայց մենք Բօքի [3] և Ֆրոնթինգամի հետ՝ առաջին մկրտութեան իբրև յիշեցուցիչ կը համարինք զայն: Եւ յիրաւի, վերը արտագրուած յոյն բնագրի μέγα θαῦμα բացատրութիւնն՝ երկրորդ կամ 'ի Նիկոմիդիա կատարուած մկրտութեան եթէ վերաբերենք, կը մնայ առանց նշանակութեան. այնու զի քրիստոնեայ կայսրը իւր դարձէն մինչև կենաց վերջը զարմանք չէ որ Երրորդութեան վերայ որոշ ծանօթութիւն ունենար, մանաւանդ եթէ Նիկիական դաւանութիւնն եւ 'ի նկատի առնումք: Իսկ եթէ նորա դարձին և առաջին մկրտութեան տանք, այնուհետեւ արդարև կը լինի զարմանալի, և այսպէս ալ հաւկանալի է: Բ. Դիտելու ենք, որ Τριάδος φάος εὗρεν բառերն այն մկրտութեան ժամանակ կատարուած անսովոր իր մի կը նշանակեն, և այս բացատրութիւնս կը գտնուի ոչ միայն Սեղբեստրոսի Վարուց մէջ, ուր յետ ըսելու, թէ մկրտեաց զթագաւորն Τριάδος ὀνόματι, անդէն կը յարէ. ἐξαίφνης λαμπηδών τῆς ἀμέτρου φωτὸς πλήρης ὑπάρχων ἐξέλαμψεν, καὶ ἦχος, և այլն. այլ նոյն իսկ Սրճեցւոյ ճառին մէջ, զոր յետոյ պիտի քննենք: Առ Ագաթանգեղոսի եւս նման բացատրութիւն մի կայ, Տրդատայ մկրտութեան նկարագրութեան մէջ, յասելն. «Եւ լոյս սաստիկ երեւեալ 'ի նմանութիւն սեան լուսաւորի, կայր 'ի վերայ ջուրցն». Թէպէտև չենք կրնար ըսել, թէ Գրիգորի կենսագրին եւ ծանօթ եղած ըլլայ Սեղբեստրոսի Վարքը: Իսկ մէջ բերուած յոյն յիշատակարանէն, — եթէ ստուգիւ մօտ յամն 472 յօրինուած է, — կարեմք եզրակացնել, թէ անկէ շատ տարիներ յառաջ Կոստանդիանոսի՝ 'ի Սեղբեստրոսէն մկրտուած ըլլալու կամ գրաւոր և կամ անգիր աւանդութիւն մի Յունաց մէջ ամենուն ծանօթ եղած պէտք է որ ըլլար, որուն վրայ հիմնուած՝ յօրինուեցաւ ապա այն որմնանկարն, արձանագրութեամբ հանդերձ:

Թողլով առ այժմ Է. և Ը. դարուց յունական միւս աղբիւրները, — որոնք զլխովին տարբեր պարագայիցմէ և յազդեցութեանց մղուած են, և մենք ժամանակին ցոյց պիտի տանք. — որոնենք թէ ինչ ժամանակի և պարագայից մէջ կարէին գրուիլ, — յԱրևելս, — Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի արարուածներն, իրենց նախկին և պարզագոյն ձևին մէջ:

Տարակոյս չկայ, թէ այսպիսի բան մի Կոստանդիանոսի և իւր մօր Հեղինեայ կենդանութեան ժամանակ դժուարաւ կարէին իրագործուիլ. վասն զի այդ միջոցին

1. Տես Antologia græca, ed. Jacobs T. 1. p. 8.
2. Etude sur le Lib. Pont. p. 172-173.
3. Christliche Kunstblätter, Freiburg, Febr. 1869, p. 145-151.

Հրեայք, հեթանոսք և Արիանոսք կը երկնչէին, իսկ քրիստոնեայք առիթ չունէին ստեղծաբանութիւններ յօդել անոնց վերայ, քանի որ Եւսեբիոս և այլք կենդանի վկայք էին նոցա գործոց, և հաւանօրէն ստուգապատում երկերով իսկ հռչակած էին անոնց գործերը: Սակայն նշանաւոր դէպք մի, այն է Նիկիոյ ժողովքին գումարումն և Կայսեր այն սրբազան գործին մասնակցիլը՝ յարմար առիթ մի կրնային համարիլ զէթ անոր մկրտութեան խնդիրը ծնանելու: Այո՛, Կոստանդիանոս թէ և ներքսապէս ջերմ քրիստոնեայ, բայց առանց մկրտութեան յերեխայից սակի էր, և չէր կրնար ըստ ինքեան հաղորդիլ ժողովականաց սրբազան արարողութեանց. այլ որովհետև ժողովական Հարց հաւանութիւնն և անոր փափաքը զայս կը պահանջէին, — պարզապէս խաղաղութիւն պահելու համար. ուստի կամ անոնց կողմանէ, — զժողովուրդը չգայթակղեցնելու աղագաւ, — և կամ ժողովուրդն ինքնին կարէր այնպէս համբաւել, թէ Կայսրն 'ի սկիզբն դարձին իւրոյ՝ մկրտուած էր 'ի Հռովմ՝ Սեղբեստրոսի ձեռքով. և ժողովրդեան մէջ շրջող ընդհանուր կարծիք մի՝ կարէր առանձին այս ինչ կամ այն քրիստոնեայ մատենագրի գրութեան իսկ նիւթ ըլլալ:

Իսկ անոր ապօրէն ծննդեան, — Հեղինեայ և Կոստասայ արարուածովք, — ինչպէս նաև զահակալութեան և դարձի պատմութիւնքը բոլորովին տարբեր ժամանակի և պարագայից բերմամբ աւելի պէտք է որ եղած ըլլան: Երբ Կոստանդ արիոսեան, Յուլիանոս Ուրացողն և Վաղէս՝ անոր մահուանէն վերջ, այն է 337 – 379 իրարու յաջորդելով, հալածանք են հանեցին քրիստոնէութեան դէմ, և հեթանոսք և Հրէայք մէկ կողմէն, միւս կողմէն ալ Արիանոսք զօրացան բանիւ և գործով, այնուհետև ամէն տեսակ ստայօդ պատմութիւններ սկսան գրել հեթանոսութեան կործանիչ և ուղղափառութեան պաշտպան Կայսեր վրայ: Այո՛, Կոստանդիանոսի պէս աշխարհական և աւետարանական դիւցազնի մի ձեռքով և կարճ ժամանակի մէջ գործուած քաղաքական, կրօնական և բարոյական այն ահագին յեղափոխութիւններն յԱրևելս և յԱրևմուտս՝ չէին կրնար վրիպիլ նոյն իսկ Նոր պղատոնական իմաստասիրաց մտքէն և գրչէն. որք մինչև այն ատեն քօղարկուած եղելութիւնքը սկսան ալ արձակ համարձակ 'ի գիր արձանացնել, որոնց ուղղափառք ալ հակառակը կը ջանային հաստատել: Այսպէս ուրեմն բիւզանդական կայսերութեան, կամ լաւ ևս Արևելքի մէջ՝ յառաջ եկան առաջին քրիստոնեայ Կայսեր Պատմութեան կրկին հոսանքներ. մին քրիստոնէական և ջատագովական, իսկ միւսն հակաքրիստոնէական և ամբաստանական: Այսպիսի մրցութեան մի գոյութիւնն 'ի Դ դարու կը հաստատեն Գր. Նազիանզացին (Ճառ Ե. գլ. Ի) և Թէոդորետոս (Գ. գլ. Է), որք յիշելով Յուլիանոսի գործադրած չարահնար միջոցները՝ Կոստանդիանոսի արարքը ջնջելու մասին, կը յաւելուն, թէ հեթանոսաց և քրիստոնէից մէջ վիճաբանութիւններ ևս կ' արծարծէր, արգիլելով վերջիններուս մեկնաբանել և ուղղել առաջնոց խօսածն և գրածները: Իսկ այն երկու հակառակ կուսակցութեանց իբրև ճշմարիտ ներկայացուցիչներ կը հանդիսանան Ե. դարու առաջին կիսուն, — ինչպէս տեսանք, — Զոսիմոս և Սոզոմէն: Առաջինը հաստատուած նոր պղատոնական դպրոցի հնագոյն գրութեան մի վրայ, 'ի լռութեան դատապարտած է Կոստանդիանոսի և Հռովմէական կայսերութեան վրայ սքանչելեօք կատարուած գործերն, իբրև մեծեղեռն բռնակալ մի նկատելով զնա. իսկ Սոզոմէն հետևելով Եւսեբեայ՝ անտովր կորովով մի կը ջանայ ցրել անոր և համախոհից աւանդածները: Վերջնոյս Ἕλληνες յոքնակի կոչմանէն կը տեսնուի, թէ Կոստանդիանոսի մասին ուրիշ շատ գրութիւններ ևս ըլլալու էին ստուգիւ, թէպէտև ժամանակը քիչ բան հասուցած է մեզ:

*Արդ՝ երբ Արևելքի մէջ քրիստոնեայ և հեթանոս մատենագիրք այսպէս կը մոռցէին լռարու հետ՝ Կոստանդիանոսի վերայ, յԱրևմուտս ընդ հակառակն դեռ լռութիւն կը պահուէր: Եւ Ամբրոսիոս, Իդատիոս, և Պրոսպէր Ակուիտանացի՝ Եւսեբիոսէն ուսած_ները միայն կը կրկնաբանէին, թէ ըլլայ նորա ծննդեան և թէ մկրտութեան նկատ_մամբ: Սակայն Ե դարուն վերջին քառորդին այս խորհրդաւոր լռութիւնս կ'ընդհա_տի, թէպէտև անոր բուն պատճառը ոչ ոք 'ի քննասիրաց կարաց յայտնել ցարդ: Ոմանք Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի* **Վարուց** *բացակայութեանը կ'ընծայեն այն երևոյթը. բայց այս չէ ուղիղ. զի արևմտեայն եկեղեցեաց և ժողովրդեան մէջ իսկ արդէն 'ի վաղուց պէտք է որ մտած ըլլային այդ գրուածները:*

*Յամին* 494 **Գելասիոս** (Գ) *պապի անուամբ ընդունելի և անընդունելի գրոց* **Ցանկը**[1] (De recipiendis et de non recipiendis libris *ըստ լատին բնագրին*) *առա_ջին անգամ կու գայ 'ի հանդէս, և այնպիսի որոշ կերպով կը խօսի Սեղբեստրոսի* **Վարուց** *վերայ, որով վերը ըսածնիս կը հաստատուի: Գրութեանս հեղինակը կը ծա_նուցանէ, թէ* « Item Actus beati Silvestri, Apostolicæ sedis præsulis licet *ejus, qui conscripsit, nomen ignoretur, a multis tamen in urbe Roma catholicis legi cognovimus et pro antiquo usu multæ hoc imitantur Ecclesiæ* ».

*Այս հակիրճ խօսքերէս կը հետևի Ա. թէ Սեղբեստրոսի Վարուց մուտն և գործածու_թիւնը նոյն իսկ Հռովմայ մէջ՝* 492 *էն շատ տարիներ յառաջ եղած է. որով բազումք կարող եղան ընթեռնուլ զայն: Բ. զի* **Հռովմի** *սովորութեան համեմատ շատ եկե_ղեցիներ անոր հետևած էին ցայն վայր. այսինքն է զայն գործ ածէին:* « Multæ Ecclesiæ » *բացատրութիւնն եթէ բացառութեամբ Հռովմայ մասնաւորն եկեղեցեաց համար եղած համարինք, — զոր չեմ կարծեր, — կը հետևի, որ գէթ յամէն* 470–494 *պետք է որ լատին լեզուով խմբագրութիւն մի և կամ թարգմանութիւն մ'եղած ըլլար, զի յունարէնը հազիւ թէ սակաւուց ոմանց ծանօթ էր դեռ. այնու մանաւանդ որ այս ժամանակէն յառաջ, ինչպէս ըսուեցաւ, Սեղբեստրոսի* **Վարուց** *գրաւոր յիշատակու_թեան մի չենք հանդիպիր՝ լատին ուրիշ մատենագրաց քով: Իսկ եթէ արևելեան եկե_ղեցեաց համար ըսուած է, այնուհետև կը հետևի, թէ* 470 *էն յառաջ իսկ կային յու_նարէն և ասորերէն լեզուով գրուած վարքի գործեր, որոնք ապա ժամանակաւ նիւ_թեր մատակարարեցին լատիներէն խմբագրութեան մի: Այս երկու կէտերս իսկ ժա_մանակին պիտի ջանանք ապացուցանել. բայց այժմ այսքանս դիտելու ենք, որ լա_տիներէն կարծեցեալ բնագրին՝ այլ և այլ ժամանակաց և հանգամանաց մէջ մասնաւոր գրուածներէ կազմակերպուած խմբագրութիւն մ' ըլլալը՝ նոյն իսկ անոր պարունա_կութենէն քաջ կը տեսնուի:*

*Լիբերիոսի*[2] *անուանեալ* **Գործերը**[3] (Gesta Liberii), — *որք ընդունելով կերպն*

1. Migne, Patrol. Lat. T. LIX, p. 173-174. – Duchesne. Lib. Pont. p. 255-257: – *Այս գրուածքս ապացուցուած է, թէ Գելասիոսի հարազատ գործ չէ. բայց ընդունուած է որ* 492–496 *ին միջոցները գրուած է. որուն համար այսպէս կը գրէր առ իս հայրն սրբա_զան Հնախօսութեան Դէ Ռոսսի.* " Il Catalogo di libri approvati o disapprovati attribuito al papa Gelasio, se non è propriamente di quel pontefice, *è compilazione fatta poco dopo l' età sua*. In alcuni antichi codici è attribuito al papa Ormizda „.

2. *Այս պապս յամին* 325 *յաջորդեց Յուլիոսի, և յամին* 366 *վախճանեալ է։*

3. *Տես* Coustant, *Epist.* Romanorum Pontificum. Paris 1721, Append. p. 90. *Այս գրու_թեանս անհարազատութիւնն ևս ապացուցուած է Բոլլանտեանց և Դիւշէնի ձեռքով։*

հնագոյն Սեղբեստրոսի Վարուց, կը ջանան միաբանել իսկ զանոնք պատմութեան հետ, – հետեւեալ խօսքերով՝ ուրիշ նոր լոյս մ՚ ես կու գան սփռել ցայս վայր յայտնած մեր կարծեաց վերայ, այսպէս. « Anno regni Constanti regis nepotis Constantini Magni viri, etc. Hoc cum legisset (Liberius) *ex libro antiquo, edoctus a libro Silvestri* episcopi Romanorum, eo quod et publice prædicaret; quia in nomine Jesu Christi, a *lepra mandatum fuisse per Silvestrum* Constantinum patruum Constantis; erat enim Constans non integre Cristianus... *Baptizatus autem* ab Eusebio Nicomediensi, in Aquilonia villa ». Ցետոյ կ՚ըսուի, – ՚ի դիմաց Կոստանդեայ առ Լիբերիոս. Sacrilegum Liberium, qui dixit patruum meum fuisse leprosum et baptizatum a Silvestro episcopo, et mundatum... dum abiero » etc.

Լիբերիոսի Գործոց անծանօթ հեղինակն Կոստանդ, Կոստաս և Կոստանդիանոս անունները խառն ՚ի խուռն յիշելով, իրարու հետ կը շփոթէ. սակայն շատ նշանաւոր են անոր աւանդութեան հետեւեալ կէտերը. Ա. Ճառերն գրուածքի մի որոշ յիշատակութիւնն, որ հանեալ կամ յիղեալ էր ի Վարուց Սեղբեստրոսի: Բ. Կոստաս է Եւսեբիոս Նիկոմիդացիէն մկրտուողն, և ոչ թէ նորա հայրը Կոստանդիանոս: Գ. Կոստանդ կայսեր Լիբերիոս պապին համար ըսուած խօսքերն, որք անոր կամ պաշտօնական և կամ ոչ պաշտօնական թղթերէ առնուած ըլլալ կը թուին:

Այս վերջին կէտս դեռ աւելի ուշագրաւ կը դառնայ, երբ Եւսեբիոս պապին Գործերն [1] (Acta, և Փելիքս Բ.ի (355–358 ին) սանդղարանութիւնն [2] իսկ կը միաբանին հաստատել: Ցիրաւի վերջինս (տես Lib. Pont.) այսպէս կը բարբառի. « Hic declaravit *Constantium* filium Constantini *hæreticum, et secundo rebaptizatum ab Eusebio* Nicomediensi iuxta Nicomediam in Aquilone villa », etc. Արդ այս, – ինչպէս նաև սիմմաքեան ըսուած անհարազատ գրութիւնք և գործք Բ. ժողովոյն Հռովմայ, – կարծես թէ մէկ գրչի տակ հաւաքուած գրութիւն՝ ամէն ջանք կ՚ընեն, պատմական ընելու սեղբեստրոսի սանդղարանութիւնը, հակառակ պատմութեան: Բնաւ չենք տարակուսիր, թէ անոնց հաւաքողը Զ և Է դարուց պարունակին մէջ ապրող լատին մէկն ըլլայ. սակայն այս իսկ առանց տարակուսի է, թէ յիշեալ պապերու գրաւոր և հնագոյն յիշատակարաններ ես ունեցած է նա իւր դիմաց՝ իբրև ատաղձ, յորոց մին էր և Սեղբեստրոսի Վարուց բնագիրն և անոր լատին խմբագրութիւնը, զորս յիշուած տեսանք ՚ի գործս Լիբերիոսի: Այս խմբագրութեանս մէջ նշանաւոր է Ուրբանեան քահանայապետին հատածը, – զոր Դիւշէն յամին 514, իսկ Ցովհ. Դէ Ռոսսի 494–496 ին գրուած կը համարին. – որ Գելասիոսի և Փելիքսի մէջ բերուած տողերը գրեթէ բառ առ բառ կրկնելով, կը յիշէ նաև զՍիւրափտիմ լեռը, ուր աքսորուած էր Սեղբեստրոս. « Hic in exilio fuit in montem *Syraptim* persecuzione Constantini concussus, et postmodum rediens cum gloria, baptizavit Constantinum Augustum, quem curavit Dominus per baptismum a lepra ».

« Cum legisset » բացատրութիւնն իսկ կը ցուցնէ, թէ Լիբերիոս չէր անոր հեղինակն, այլ յետագայ մէկն ՚ի Զ դարուն, որ աչքի զարնող կերպով շփոթած է Կոստանդ, Կոստանդիանոս և Կոստաս անուանքը իրարու հետ։

1. Տես Bolland. T. III. p. 167.
2. Տես Duchesne, *Etude sur le Lib. Pont.* p. 183 - 191.

Լատին այս անհարազատ՝ բայց հնագոյն աղբերաց վրայ յաւելունք նաև **Ս. Հե-րոնիմոսի** ընծայուած թուղթը [1], – գրեալ առ **Եւստոքիոս** ոմն, – **վասն կապանաց Ս. Պե-տրոսի** (De vinculis Petri), ուր Պետրոս և Պօղոս առաքելոց երևումն ևս կը յիշուի առ Կոստանդիանոս՝ այսպէս. « Sic quousque ad Magni Constantini imperium ventum est, qui postquam *dignatione superna, per Sanctos apostolos Petrum et Paulum visitatus*, et per Silvestrum Papam baptizatus est; et ex persecutore fidei defensor, et mandatum Christi custoditor assiduos factus est ».

Արդ՝ մինչև հիմայ մէջ բերուած լատին հնագոյն աղբերաց, այն է Լիբերիոսի, Գե-լասիոսի, Փելիքսի, Եւսեբիոսի, Քսեստոսի, Սիմմաքոսի, Որմնզդէսի և այլն Քահանայա-պետաց գործերու աւանդածները եթէ բերենք 'ի մի, կ'ունենանք Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի ստեղծաբանութեան էական մասունքը: Ուստի կարեմք այսպէս ծեռն-արկել. կամ այն է՝ թէ այս անհարազատ գործոց աւանդածներուն վերայ հիմնեալ՝ բարձրացել է Սեղբեստրոսի **վարուց** շինուածն. կամ ընդհակառակն այս անհարա-զատ **գործերը** առհասարակ Սեղբեստրոսի **վարքէն** քաղած են իրենց աւանդածները, և կամ ընդունել, թէ ոչ Սեղբեստրոսի **վարքն** յիշեալ գործերէն, և ոչ այն Գործերն՝ Սեղբեստրոսի մեզ ծանօթ Վարքէն առնուած են ուղղակի. այլ թէ եղած է երկո-ցունց հնագոյն աղբիւր մի և կամ մէկէն աւելի աղբիւրներ, յորմէ յառաջ եկած ըլլան երկաքանչիւրքն:

Առաջին կէտը կարելի չէ ընդունել, վասն զի յիշեալ Գործերէն զէթ ոմանց մէջ այնպիսի տեղեր կան, որք ուղղակի Սեղբեստրոսի Վարքէն առնուած կը տեսնուին: Երկրորդ կէտը, – եթէ Քահանայապետական Գրքի (Liber Pontificalis) խմբագրու-թեան ժամանակակէտը միայն 'ի նկատի առնունք, – ըստ ինքեան հաւանական կ'երևի, բայց որովհետև անուրանալի է նոյնպէս, թէ վերը յիշուած քահանայապե-տական անհարազատ գրոց մէջ եղած աւանդութիւնքն իսկ հնագոյն յիշատակարա-նաց վերայ հաստատուած են, և չէ մարթ բացէ 'ի բաց մերժել զանոնք. ուրեմն այդ ևս մեզ անընդունելի է: Այսպէս ուրեմն իբրև ստոյգ եղելութիւն կը մնայ ընդունել վերջին կէտը, որուն նպաստաւոր են մինչև ցայս վայր յոյն և լատին հնագոյն աղ-բիւրներէն մէջ բերուած տեղիքը, որոնք թէպէտև մի և նոյն դիպաց վերայ կը խօ-սին, բայց քանիծն զանազանութեամբ յիրերաց և 'ի **վարուց** Սեղբեստրոսի: Իսկ ընդ-հակառակն բոլոր այն լատին և յոյն մատենագիրներն, որք վեցերորդ դարէն կամ Սեղբեստրոսի Վարուց երկրորդ խմբագրութենէն վերջը կու գան 'ի հանդէս, աւելի կը համաձայնին իրարու, գոգցես իմն յայտնելով, թէ ամէնքն ալ մի և նոյն խմբա-գրութենէն լուսաւորուած կը խօսին :

Բաց աստի՝ ուրիշ տարօրինակ երևոյթ մ' ալ կ'ելլէ մեզ ընդ յառաջ, որ այնքան աւելի զգալի է, որքան ընդհանուր. այսինքն է, Ե դարու վերջին քառորդէն սկսեալ

1. Opera S. Hieron. Paris 1643. T. IX, *Epistola* 35.

Այս թուղթս ոմանք 'ի գիտնոց՝ Հերոնիմոսի ժամանակակցի մի գործ կը համարին: Տրոհիթինզահմ հաւանական չի կարծեր զայն, բայց պատճառ մ' ալ չի նշանակեր իւր երկբայութեան: Սակայն Եւստոքիոս, – որուն հետ է թղթոյս հեղինակին աղերսը, – եթէ, որպէս կարծեմ, Կեսարացի սոփեստէսն է, այնուհետև կարելի է ըսել, թէ այդ թուղթը ոչ միայն Հերոնիմոսի, այլ գուցէ թէ անկէց տարիներ իսկ յառաջ գրուած ըլլայ:

մինչև ԺԲ դար՝ լատին մատենագրաց մեծ խումբ [1] մի անընդհատ յաջորդութեամբ կը յեղյեղեն Սեղբեստրոսի Վարքը: Իսկ առ Յոյնս, ըստ հակառակին, մինչև Է դարուն վերջը խոր լռութիւն կը տիրէ. Յով. Մալալա Անտիոքացին միայն բացառութիւն մի կը կազմէ, յիշելով որոշակի Կոստանդիանոսի, Հեղինեայ և Հռոմայ ժողովրդեան մկրտութիւնը Սեղբեստրոսի ձեռքով: Բայց դիտելու ենք, որ այդ հեղինակն խոյ Զ. դարուն վերջն է, երբ Սեղբեստրոսի Վարուց լատին խմբագրութիւնն արդէն կատարուած և յունարենի ևս փոխուած էր:

Արդ՝ մինչև հիմայ յոյն և լատին հին աղբերաց քննութենէն որոշ տեսնուեցաւ և մենք չենք վարանիր եզրակացնել, թէ [illegible] Այն, նախ և յառաջ Բիւզանդիոնը սուրբ Հռոմայ զԿոստանդիանոսեանը. իսկ Հռոմ վերադարձոյց զայն Բիւզանդիոնի Սեղբեստրոսի Վարքը նորանոր յաւելուածներով հանդերձ:

Այսպիսի անստոյգ բայց և աներկբայելի տուրևառութեան մասին՝ հետևեալ ծանրակշիռ հարցերը բնականապէս կ՚ ելլեն ընդ առաջ, և մենք պէտք ենք ըստ կարելւոյն լուծել զանոնք: Ա. Թէ ինչ ղիպաց և պարագայից բերմամբ Կոստանդիանոսի և Հեղինեայ պատմութիւնն անցաւ յԱրևմուտս, և ինչ պայմաններով եղան ընդունելի: Բ. Թէ, որ ժամանակ և ինչ հանգամանաց ներքև միացան Սեղբեստրոսի արարուածքն անոնց հետ և եղան Յունաց ընդունելի:

Առ այս դիտելու ենք նախ, որ ըստ վկայութեան Նսեբիոսի [2], Կոստանդիանոսի մահուանէն անմիջապէս յետոյ՝ Յոյնք և արևելեայք սկսան շուտով տօնել զնա, իբրև զառաքելոց Առաքելոց: Այս տօնն ըստ հին տումարին յունական եկեղեցւոյ կը կատարուէր, — զոյգ ընդ Հեղինեայ, — ՚ի 21 [3] Մայիսի, այնքան մեծաշուք՝ մինչև տէրութեան ատեանք անգամ կը փակուէին: Ուստի այս առթիւ բնական էր որ Յունաց, այսպէս և Հայոց փայլուն և հետևակ հանճարներ սրէին իրենց միտքն և գրիչը, այնպէս ներբողեաններով հռչակել անոր անցեալ կեանքն և կենաց արարուածները, որ իրենց և քրիստոնէութեան պարծանքն եղած էր: Այսպէս ուրեմն ՚ի վաղ ժամանակաց մինչև ցծ դար պէտք է որ գրուած լինէին բազմաթիւ գրութիւններ, թէ և ժամանակը քիչ բան հասուցած է մեզ: Նոյն իսկ մեր աղքատին մատենագրութեան մէջ կը տեսնենք այսպիսի զրուցաց այլ և այլ հետքեր: Փ. Բուզանդացին՝ Ցակ. Մծբնացւոյ արարուածով, Ագաթանգեղոս՝ հրեշտակի երևման և թագադրութեան վէպով, այսպէս և Զենոբ, մանաւանդ Խորենացին երկիցս իբրև համաշխարհի տօնական սուրբ յիշատակութեամբ արծազանգել կու տան, յաստուածուստ Կոստանդիանոսի վերայ կատարուած սքանչելեաց: Երկրորդ եթէ Հայք և Միջագետք՝ Աբգարու և Տրդա_

1. Գր. Տուրացի (Hist. Francorum) յամին 539-5395, Ս. Ալդելմոս (Bibl. Patrum, Paris T. III. p. 290) է. դարում: Բեդա՝ Ը. դարում, Ադրիանոս Ա. յամին 772–795 առ Կոստանդին և Իրինէ գրած թղթոց մէջ (Տես Sacrosancta Concilia, Labbei, Venetii, T. VIII, p. 748), — Նիկողայոս Ա. (Տես Hard. p. 154) յամին 858–867, — Ադոն Վիեննացի (Hist. Christ. De la Barre, Paris 1583, f. 496) յամին 850–875, — Յովհաննէս Սարկաւագ (Տես Muratori, *Rerum* italica Script. T. I. P. II, p. 293) յամին 872, — այսպէս յետոյ Լեւոն Թ., [illegible], Հերման Լ[illegible], Ոտտոն [illegible], [illegible], և այլք յոլովք:
2. Bolland. *Acta Sanct.* Aug. T. III. p. 578. et Maï. T. V. p. 12 - 14.
3. Կենսագրութիւն Կոստանդիանոսի, Դ. Գիրք:

տայ առաջին քրիստոնեայ Թագաւորաց և նոցա դարձի պատմութիւնը բարեպաշտութեամբ վիպասանութեան փոխեցին, Յոյնք կամ նոյնք չէին կրնար մնալ անտարբեր նաև Կոստանդիանոսի նկատմամբ: Հետևաբար զուգեցին անոր վարքը՝ ժամանակակից մեծ եկեղեցականի մի կամ սուրբ հօտապետի գործոց հետ, ինչպէս Աբգարուն՝ Ադդէի, և Տրդատայն՝ Գր. Լուսաւորչի հետ, Արիոսեանց բերանը գոցելու համար. և ո՞վ արդեօք Սեղբեստրոսէն աւելի մեծ սրբութեան և հեղինակութեան համբաւ տարածած էր յԱրևելս և յԱրևմուտս. և կամ որո՞ւն պատմութիւնը աւելի քան զՍեղբեստրոսին ծածկուած 'ի խոր հնութեան և զննութեան:

Երրորդ՝ երբ Արևելք իր եկեղեցական բազմախուռն պատմագրաց ձեռքով, առիթ և դիւրութիւն ունէր ո՛ր և է սրբազան վէպ կամ դէպք 'ի գրի առնուլ և տարածել, Արևմուտք, ընդհակառակն դեռ անոնցմէ ոչ մէկն ունէր. հետևաբար ամէն գրական և կրօնական նորութիւն, ամէն հնագոյն վէպ յԱրևելից անցնելով հոն՝ արձագանգ կու տար: Անտարակոյս այս տեսակ անվաւեր գրուածոց հետ անցան նաև Կոստանդիանոսի և Հեղինեայ վիպասանութիւնքն ևս: Այո՛, Բարոնիոսէն և 'ի Բոլլանդեանց սկսեալ մինչև Դիւշէն և Ֆրոհթինգահմ՝ գիտնականք առհասարակ յայսմ կը համաձայնին: Ո՞չ ապաքէն Սեղբեստրոսի **Վարուց** առանձին մասանց վերլուծութիւնն իսկ զայս կը հաստատէ: Մենք աւելորդ կը համարինք այս տեղ ուրիշներէն այնքան անգամ կրկնուած փաստերը վերստին յեղյեղել. այլ թէ ի՞նչ պարագայից բերմամբ մտաւ, և թէ ի՞նչպէս նորոգուելով՝ վերադարձաւ յետ դարու միոյ յԱրևելս: Այս էական կէտս ոչ ոք 'ի քննասիրաց ըստ արժան բաւականին պարզեց. որով և անոր ծագման մասին եղած քննադատութիւնք իսկ մնացին ապարդիւն, և կամ խակ ու վաղահաս պտուղներ յառաջ բերին:

Արդ՝ նորոյն Հռովմայ կամ Բիւզանդիոնի և հնոյն մէջ եղած կրօնական յարաբերութիւնքը [1] որչափ ևս սերտ և բազմակողմանի եղած ըլլան Ե. դարու մէջ, որչափ որ ալ Կոստանդիանոսի և Հեղինեայ յիշատակը նուիրագործուած էր 'ի Հռովմ, սակայն և այնպէս չենք կրնար ըսել, թէ այն դարու առաջին քառորդին և հոգևոր իշխանութեան բացայայտ վճռով մի մտած ըլլայ անոնց ստեղծաբանութիւնն 'ի Հռովմ. այլ կամ արևելքէն հոն ուխտի գացող բարեպաշտ եկեղեցականաց և կամ յոյն գաղթականաց և գրագիտաց ձեռքով մտած անդ. և մտաւ հաւանօրէն Քաղկեդոնի ժողովքէն ետքը. այսինքն է հակաքաղկեդոնեան **Ակակիոսի** և **Պետրոսի** գրգռմամբ եղած աղմկալից օրերուն մէջ, երբ **Յովհ. Աղեքսանդրացի** հայրապետին հետ՝ ուրիշ բարեփառ եկեղեցականներ և աշխարհիկք իսկ ապաւինեցան արևմտեան կայսրութեան մայրաքաղաքը: Այս բանիս յայտնի ապացոյցն արդէն տրուած է մինչև այն ժամանակ լատին մատենագրաց պահած խոր լռութեամբը, զոր տեսանք 'ի վեր անդր:

Իսկ Ե. դարու երկրորդ կիսում երբ Կոստանդիանոսի և Հեղինեայ ստեղծաբանութիւնք դեռ նոր մտան 'ի Հռովմ, ոչ այնքան իրենց հակապատմական պարունակութեամբը թերևս, որքան լեզուով դժուարամատչելի եղան ժողովրդեան. բայց ժառանգաւորաց մէջ կային ծանօթք հելլէն լեզուին, մանաւանդ թէ գաղթական յոյներ ևս,

1. Քահանայապետական գրոց անծանօթ **Հեղինակը** (տես Դիւշէն, Liber Pontif. p. 255) խօսելով Գելասիոսի գործոց վերայ, կ'ըսէ, թէ « Hujus temporibus, այսինքն է 492 – 496 *iterum venit relatio de Grecias*, eo quod multa mala et homicidia fierent a *Petro* et *Acacio* Constantinopolim. Eodem tempore fugiens Iohannes Alexandrinus episcopus catholicus et venit Romam ad sedem apostolicam, » etc.

*որք մատչելի ըրին զայն բազմաց: Թեպէտև դար մ'ամբողջ սահեր անցեր էր քրիստոնէութեան այն կրկին դիւցազանց գործոց և յիշատակարանաց վրայէն, սակայն անոնց վէպերն և յիշատակը տակաւին կենդանի էին Հռովմայ և անոր դրացի երկրաց մէջ: Կենդանի էին դեռ 'ի բերան ժողովրդեան* [illegible] *ընտ՝ Սեղբեստրոսի արարուածովք. կենդանի և կանգուն կային Կոստանդիանոսի հոյակապ տաճարն և սրբազան նուիրատուութիւնք, այսպէս և Կապիտոլիոն, որք զխոնոց պատմական ծանօթութիւնները կը լծակցէին ռամկին մէջ շրջող վէպերու հետ, զորս կը յեղյեղէին Հռովմ եկող գացողներուն ականջն 'ի վեր. և Ս. Պետրոսի և Պօղոսի գերեզմանաց այցելուք կ'առնուին և կը տանէին մինչև Արևելքի խորերը: Եւ յիրաւի եթէ Սիմմաքեան հաւաքածոյից կամ* Liber Pontificalis *գրոց հեղինակք յետ երկուց դարուց կարացին այնքան բան աւանդել նախնի քահանայապետաց գործերու մասին, ո՛րչափ ուրեմն նոյնքան դար յառաջ ապրողք: Սեղբեստրոսի պաշտօնն և յիշատակն թէ առանձին և թէ հասարակաց յիշատակարաններով*[1] *արդէն նուիրագործուած էին, ոչ ինչ նուազ և Կոստանդիանոսին, երբ Սեղբեստրոսի* [illegible] *ստեղծաբանութիւն եկաւ աւելի ևս ժողովրդական գործել զայն: Հռովմայ զխոնական դասը համաձայն չգտնելով այն զրութիւնը՝ Եւսեբիոսի, Հերոնիմոսի և Ամբրոսիոսի աւանդածներուն հետ, խեթիւ նայեցաւ անոր վերայ. բայց որովհետև ժողովրդեան մէջ շրջող զրուցաց համաձայն էր, այն պատճառաւ խսկ ունեցաւ բազմաթիւ ընթերցողներ, — ըստ վկայութեան Գելասիոսեան ցանկին. — և եկեղեցեաց մէջ խսկ գործածական դարձաւ: Բայց այսու հանդերձ բաւական դժուարութեանց հանդիպեցաւ Հռովմայ մէջ մինչև որ ընդունելի եղաւ: Ուստի այս և ուրիշ կրօնական դէպք մի առիթ տուին Գելասիոս պապին հրապարակաւ յայտարարել, թէ այն գրուածքը կարէր այնուհետև արձակ համարձակ վերծանիլ. և այս դէպքս էր Բիւզանդիոնի և Հռովմայ եկեղեցեաց և վեհապետաց մէջ տեղի ունեցած նոր յարաբերութիւնն, զոր քահանայապետական գրոց հեղինակն մասնաւոր կերպով նշանակած է, — Գելասիոսի ձեռքով եղած կարևոր բարեկարգութեանց մէջ ժամանակագրական մեծ սխալով մի, — Ակակեանց և Պետրոսեանց կուսակցութեանց մէջ ունեցած դատավարութեամբ, և Անաստաս կամ լաւ ևս Զենոն կայսեր հետ ըրած ազդու բանակցութիւններով:*

*Սակայն Գելասիոս՝ այնպիսի պաշտօնական յայտարարութիւն մ'ըրած ժամանակ* **pro urbis et orbis,** *չէր կրնար սեղբեստրոսեան և կոստանդիանոսեան ստեղծաբանութիւնքը ըստ նախկին ձևին ներկայացնել. որովհետև այն զրութիւնն արևելեան եկեղեցւոյ և մտաց ծնունդ ըլլալով, մեծաւ մասամբ Կոստանդիանոսի և Հեղինեայ վերայ կը դառնայր, և արևմտեանէն աւելի արևելեան եկեղեցւոյ և կայսերութեան վիճակը վեր բռնել նկրտած էր: Ուրեմն Գելասիոսի յայտարարածը Սեղբեստրոսի Վարուց նոր խմբագրութիւնն էր, զոր խւր ըրած եկեղեցական բարեկարգութեանց համաձայն ձևած էր: Եւ որովհետև Քաղկեդոնի ժողովքէն յետոյ Բիւզանդիոնի պատրիարքներէն ոմանք՝ Կոստանդնուպօլսոյ ժողովոյն տուած պարզ պատուոյ արտօնութեան վերայ յեցած, կը պահանջէին*[2]*, որ ոչ միայն կայսերական քաղաքի մետրապօլտա-*

1. *Տես.* **De Rossi,** *Coll.* **1872, p. 83. – Muratori,** ***Litter.*** **Rom. T. I, p. 454, – Duchesne,** ***Liber.*** **Pontif. p. 201.**

2 *Այս պատմական եղելութիւն մ'է, զոր Անատոլիոս և Յուստինիանոս երէց մինչև ծայրայեղութեան հասուցին, բռնաբարելով և տանջելով զարբազան քահանայապետն* **Վիգիլ**... *Կ. Պօլսոյ արգելարանաց մէջ:*

կան ամծուը գործադրական լիուսաւութիւն ևս ունենայ Փոքուն Ասիոյ և Յունաստանի եկեղեցեաց վերայ, այլ նոյն իսկ անկախ ըլլայ Ս. Պետրոսի գերագոյն գահէն, իբր հաւասար նմին. ուրեմն Գելասիոս քաղցրութեամբ անոնց փառասիրական ձկտումնե֊րը խոնարհեցնելու, և երկու եկեղեցեաց մէջ Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի օրով հաստատուած վաղեմի միութիւնն ամրապնդելու համար, և ցուցնելու մանաւանդ թէ Բիւզանդիոնի առաջին կայսեր դարձն և կրօնական բարեփոխութիւնքն՝ անդուստ 'ի վերուստ Հռովմայ Հայրապետին, այն է Ս. Սեղբեստրոսի ձեռքով կատարուած էին, հարկ էր որ անոր **Վարուց** մեծ կարևորութիւն տայր, և այնու մանաւանդ ա֊նոնց բերանը կարկէր:

Յիրաւի, նոյն իսկ այն **Վարուց** լատին խմբագրութեան և արևելեան հնագոյն աղ֊բերաց մէջ եղած աչքի զարնող տարբերութիւնքն իսկ յայտնի հաւաստիք են այսպիսի եղելութեան: Բ. Այսու միայն կը մեկնուին և հասականալի կ'ըլլան այն երկու խորհըր֊դաւոր կէտերն, այսինքն թէ ինչու համար մինչև Ե դար լատինք խոր լռութեան քող մի ձգելով Սեղբեստրոսի ստեղծաբանութեան վերայ, կարծես խեղդամահ առնել կ'ու֊զեն զայն, մինչդեռ արևելեայք յաճախակի կոչումներ կ'ընեն անտի՝ ընդդէմ Արիա֊նոսաց և հեթանոսաց. իսկ վեցերորդ դարէն վերջ, ընդհակառակն, նոքա կը լռեն, — զոգցես իմն տհաճ և անհաւան երևցնելով եղած փոփոխութեան վերայ, — ուր լատինք մեծաձայն աղաղակաւ կը հռչակեն զայն: Այո՛, Յոյնք կը մնան անբարբառ մինչև Ը. դարը, վերահաս վտանգ մի միայն, — այն է **Պատկերամարտից** մոլորութիւնը, — կու գայ լուծել անոնց զաքարիական լռութիւնը և կու տայ բարբառել:

**Թէոփանէս** [1] պատմագիրն խլախուսած **Ադրիանոս** Ա պապին առ Կոստանդիանոս և Իրենէ գրած թղթոց [2] վերայ, յորս մէջ կը բերուին, — Սեղբեստրոսի վարքէն, — Ս. Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի պատկերաց և առ Կոստանդիանոս երևման հատուած֊քը, — առաջին անգամ ասպարէզ կ'ելնէ, — յամին 785–818, — և կը թօթափէ անոր ենկատմամբ յոյն մատենագրաց երկդարեան լռութիւնն և քունը: Այո՛, նա կը զուգէ Կոստանդիանոսի պատմական գործերը՝ Սեղբեստրոսի ստեղծաբանութեանց հետ, զի յետ յիշելոյ խաչի երևումը, Մաքսենտիոսի յաղթելն և նորա դարձը, կը ծանուցանէ և Սեղբեստրոսի ձեռքէն ընդունած մկրտութիւնը: Նորա մէջ բերած այն փաստը, թէ Կոստանդիանոս՝ Եւսեբիոս Նիկոմիդացիէն շատ յառաջ մկրտուած էր 'ի Հռովմ, ապա թէ ոչ չպիտի կարենար Նիկիոյ ժողովքին մասնակցիլ, եթէ հաւաստի ևս չընդունինք, սակայն անտարակոյս կամ Դ. դարու Կոստանդիանոսի ջատագովա֊կան գրուածքէ մ'առնուած է, — զորս 'ի վեր անդր ենթադրեցինք, — և կամ Գելա֊սիոսի թղթերէն:

**Գէորգ Միանձն**, մականուանեալ **Ամարտոլոս**՝ ամբողջ գլուխ մի, — այն է Ա. գլ. Դ, — նուիրած է՝ համառօտելու Սեղբեստրոսի **Գործերը**, դնելով անոր խորագիր Ἐκ τοῦ Βίου ἁγίου Σιλβέστρου [3]. Հեղինակս Կապիտոլիոնի վիշապի արարուածով կը սկսի. բայց դուրս թողուցել է կայսեր դարձի և 'ի Նիկոմիդիա կատարուած մկրտութեան պատմութիւնքը: Առասպելեալ մկրտութեան 'ի նպաստ կը ջանայ ա֊ւելի փաստեր բերել:

1. Տես Ed. Bonn. 1839, T. I, p. 19, 24, 25.

2. Այս թղթերէն առաջինը, — գրեալ յամին 783, — կարդացուեցաւ Նիկիոյ Բ. ժողովոյն մէջ՝ 'ի հերքումն պատկերամարտից:

3. Տես Migne, Patrolog. Græc. T. C, p. 646.

**Սիմէոն Մետափրաստէս** [1], – *յամին* 914 – 965, – *տեղ տեղ յեղաշրջելով մէջ բե֊րած է Սեղբեստրոսի Վարքը, իր մեծագանձ հաւաքման մէջ, տեղ տեղ ալ դուրս թողլով բնագրին այս ինչ կամ այն տեղին. և այս առանց բանաւոր պատճառի մի ըրած չէ:*

*Յունական եկեղեցւոյ* **Յայսմաւուրաց** *հնագոյնն, այն է Վասիլ Բ. կայսեր անուամբ յամին* 975 – 984 *յօրինուածը, Յունուար երկու կարգելով Ս. Սեղբեստրոսի տօնը, – ըստ վաղեմի յիշատակարանաց, – կը քաղէ անոր* **Վարուց** *էական կէտերն իբրև աներկբայելի այսպէս* « Σίλβεστρος ὁ σοφὸς... πολλὰ θαύματα ἐποίησε, καὶ τὸν μέγαν Κωνσταντῖνον, τὸν πρῶτον ἐν Χριστιανοῖς βασιλεύσαντα, πρός τὴν Χριστὸν πίστιν ὡδήγησε, καί τῷ ἁγίῳ βαπτίσματι τὴν τοῦ σώματος λέπραν, καὶ τὰ τῆς ψυχῆς πάθη, διὰ τῆς ἐπιφανίας τῶν ἁγίων ἀποστόλων Πέτρου καὶ Παύλου, ἀπεκάθηρε ».

**Սէրժիոս** [2] *Յայսմաւուրքն ևս, – գրեալ Ժ – ԺԱ դարուն, – ինչպէս նաև Ժ դարուն գրուած Վատիկանի թիւ* 974 *յոյն ձեռագիրն՝ կը համաձայնին Վասիլեանին: Վերջնոյն մէջ բաց 'ի մկրտութեան յիշատակութենէն, կը պարունակուին նոյնպէս* **արեւելեան եկեղեցւոյ**, **լատինական** *բժշկաց և մանկանց կոտորածի մանրամասնութիւնքը: Այսպէս նաև Ղեւոնդիոս* [3] *ժամանակագիր յամին* 1000 – 1020, *Միք. Գլիկա* [4] *յամին* 1118, *Կեդրենոս* [5] *յամին* 1057, *և Զոնարաս* [6] *յամին* 1118:

*Մենք աւելորդ կը համարինք դեռ ուրիշ կոչումներով ծանրաբեռնել մեր գրութիւնը, զի մինչև հիմայ մէջ բերուած ընծայութիւնքս իսկ ըստ բաւականին համոզեցուցիչք են Սեղբեստրոսի* **Վարուց** *կրկին խմբագրութիւնք եղած լինելուն, այսինքն են նախկին յունարէնն և լատիներէնն 'ի վերջայս Ե. դարուն, կամ 'ի սկիզբն վեցերորդին:*

*Այսուհետև այս կարևոր խնդիրս՝ բոլոր իւր ծանրութեամբը կը կեդրոնանայ արևելեան այն երկու հնագոյն և հմտագոյն աղբերաց վերայ, որպիսիք են ասորին* **Յակ. Սրճեցի** *և մերս* **Խորենացի**, *որոնք Ե դարու վերջին կիսում ծաղկեցան և գրեցին իրենց գործերը, և սակայն երկուքն ալ Սեղբեստրոսի ստեղծաբանութեան համանման բաներ կ'աւանդեն մեզ: Բնականապէս ուրեմն այս հարցս կ'ելլէ մեզ ընդ առաջ. Արդեօք սոքա Սեղբեստրոսի Վարուց լատին խմբագրութենէն՝ կամ անոր վրայէն յետոյ ուրեմն եղած թարգմանութենէ՞ մի ներշնչուած գրեցին, թէ ընդհակառակն մեզ անծանօթ յունարենէ և քան զայն հնագոյն գրուածներէ:*

*Դիտելու ենք, որ Ասորի մեծ հռետորն և բանաստեղծն՝ իր Կոստանդիանոսի մկրտութեան վերայ յօրինած ճառին* [7] *մէջ, երկայն նախերգանքով մի յետ ծանուցանե֊*

1. *Տես* Surius, *De Sanct.* T. VI. p. 1173 - 1187.

2. *Տես* Thes. Monum. eccles. *և այլն, և կամ* Henrici Canisii. *Lec.* Ant. adjecit Jac. Basnage, T. III, p. 1.

3. *Տես* Ed. Bonn. p. 84.

4. Ed. Bonn. p. 46 - 467.

5. Ed. Bonn. 1837. T. I, p. 473.

6. *Տես* Ed. Parisii. T. II, I. XIII, p. 3 - 5.

7. *Որուն խորագիրն է.* « Omelia sopra l' Imperatore Costantino e la guarigione della sua lebbra ». *զոր թարգմանեց յասորւոյն և հրատարակից հանդերձ ծանօթութեամբ և բնագրաւ* **Աւետիք Լ. Յովհաննիսեանց** *'ի Հռովմ* 1882: *Այս ճառս կը գտնուի ասորերէն երկու հնագիր ձեռագրաց մէջ, որք են Վատիկանի թիւ* 117, *և բրիտ. Մուզէոնի թիւ* 803 *գրչա֊*

լոյ իր ունկնդրաց, թէ Կոստանդիանոսի պատմութիւնը պիտի ընէ, անդէն կը նկարագրէ այլաբանօրէն, թէ Կոստանդիանոս 'ի ծնէ բորոտեալ էր. — թէ այս (Նորօրինակ) բորոտութիւնս աւրհնոյն կը կրէր նա իւր ճակտին և շրթանցը վերայ, երբ ծնաւ. — այսպէս կազմեց զնա Աստուած յարգանդի մօրն, հայրը հեթանոս լինելուն համար, և որպէս զի որդին ևս հեշտանաց շուրջ. — այս բորոտութեան աղագաւ այնպիսի գարշահոտութիւն կը բուրէր անկէ, որ բաց 'ի իւր մօրէն՝ ոչ այլ ոք կը հանդուրժէր անոր մօտենալ: — Մինչդեռ. անոր հայրը Կոստաս՝ պերասնեան ամէն բժշկաց ցոյց կու տար զորդին, առողջացնելու յուսով, մայրն ընդհակառակն ցաւագին կը պաղատէր, որ չառողջանայ, զի մի առողջանալով հեթանոս մնայ. այլ կ'աղօթէր որ էրիկը Կոստաս մեռնի, վասն զի ինքը գիտէր թէ օր մի որդին պիտի միապետէր, բարձրացնէր շինել ցին և Նաւամէր Հերբեոյէկասաննեանները: — Աստուծոյ հրեշտակը կը լսէ Հեղինեայ աղերսը, — կ'առնու Կոստասայ հոգին. — մեծամեծք կը խմբուին 'ի թաղել զկայսրն և մխիթարել զՀեղինէ. իսկ նա թէպէտև առ արտաքս կ'արտասուէ, բայց սրտանց կ'ուրախանայ: — Կը լրանան սգոյ օրերն, և Կոստանդիանոսի թագաւորելու ժամանակըն հասած է. — Երկու կոասկցանեանց կը բաժնեան մեծամեծ, — ոմանք երամաց կը համարին անոր յաջորդութեանը, և ոմանք բարբառեալ մի չեն ուզեր կայսր ճանչնալ. — Աստուած կ' որոշէ ապա անոր գահակալութիւնը, — մեծամեծք առհասարակ կու գան մատուցանել անոր իրենց մեծարանքը, բայց նա գարշահոտութեամբ ամենուն զլզուանք կ'ազդէ: — Յետ որոյ ամէն կողմ դեսպաններ կը ղրկէ, և առանձին նամակաւ Բաբելոնին Պատրիարքը կը կանչէ, — խորհուրդ կը հարցնէ իր հիւանդութեան նամար, — նոքա ժամադիր կ'ըլլան վաղին պատասխանելու. — բոլոր գիշերն յօգնութիւն կը կոչեն զՍատանայ և զՍտութիւնը. — կը հասնի առաւօտը, — բազմած է բորոտեալ կայսրն իր գահուն վերայ Քաղդեայք խորհուրդ կու տան, որ 400 մանկլտիս ժողովէ իրենց մարց հետ, զենու զնոսա պղնձէ աւազանի մէջ, լուացուի անոնց արեամբ և պիտի բուժի. — հրաւիրանաց նամակներ [1] կը ղրկուին կայսեր կողմանէ քաղաքի մեծամեծաց և զաւառապետաց, — կը ժողովուին մարք հանդերձ մանկամբք, և դատաւորք կը ծանուցանեն անոնց՝ կայսեր հրամանը. — լուրը կը տարածուի Հռովմայ մէջ. — Գերեաց (քրիստոնէից) առաջնորդը կ'իմանայ ըլլալիքն և կը դիմադրէ. — Նախ կը պաղատի առ Աստուած, ապա թուղթ մի կը գրէ առ Կայսրուհին՝ ծեռնտու ըլլալ իրեն. — կ'ընդունի անոր պատասխանն և աջակցութիւնը, — կը փութայ առ կայսրն, — կ'իմացնէ Քաղդէից խաբէութիւնը, — և մանկանց ազատութիւնը կը խնդրէ, խորհրդոց տալով անոր, որ ձեռնարկ անմեղ արեանց՝ ասաբն ատեանին ջրով մկրտեն և բժշկեն; ապացոյց բերելով Սեղբեստրոսի պէտքն յԱնդրէոս. — կը մերժէ Կոստանդիանոս անոր խնդիրը. — այնուհետև մայր կայսրուհին քուրձ զգեցած կը ճնպէ առ որդին, կը յորդորէ յետ կենալ այն ոճիրէն. բայց 'ի զուր: — Դարձեալ կու գայ զերեաց

գիրք: Առաջինն, — ըստ մանրազնին քննութեան յիշեալ գիտնականին, — գրուածէ 919–927 ի միջոցները. իսկ վերջինը դեռ աւելի հին, ըստ Վրդնի, այսինքն է Թ. դարուն: Այս ձեռագիրս թէև ընտրելագոյն, բայց յառաջոյ և յետոյ պակասաւոր է. Յրոհթինգահմի հրատարակութիւնն առաջնոյն վրայէն եղած է:

1. Որոց խորագիրն է. « Ի կողմանէ կայսեր ողջոյն և քաջողջութիւն քաղաքին և ամենայն մեծամեծաց: Այս թղթերովս կը ծանուցանեմ ձեզ, թէ հանդիսաւոր ուխտ մի պիտի կատարեմ առ ամենայն մարս անդրանկածինս. ուստի ձեզմէ իւրաքանչիւր ոք յղէ առ իս փութով հազար մանկունս, և պիտի ընդունի ինձմէ պարգևս »:

առաջնորդն հանդերձ աւազանով, կը սպառնի, կը սպառնայ, բայց անօգուտ տեղ. — վերջապէս սրտառուչ աղօթքով մի կը կոչէ երկնից Թագաւորին օգնութիւնը. — կը հասնի շուտով հրեշտակ յԱստուծոյ, 'ի կերպարանս բոցավառ երիտասարդի և կը կանգնի կայսեր դիմաց. — կը զարհուրի կայսրն, — կը կանչէ գերեաց առաջնորդը խօսել երկնաւոր պատգամաբերի հետ. — կը հարցուի և պատասխան կ'ընդունուի անկէց, թէ ինքն է Աստուծոյ կողմէն ղրկուած հրեշտակն, և թէ մանկտին չպիտի մեռնին: — Կայսրը զարհուրած կը հարցնէ, թէ ի՞նչ ընելու է: — Առաջնորդը խորհուրդ կու տայ պահել զմանկտին 'ի բանտի, կանգնել աւազան, ընկղմել 'ի ջուր անդր Աստուծոյն զօրութեանց, և եթէ անարատ ելնէ անկէց՝ այնուհետև ազատ է իր հրամանը կատարել: — Կ'ընդունուի առաջարկը, — պատրաստութիւնք կը տեսնուին մկրտութեան. — գերեաց առաջնորդը կ'ընթանայ տալ աւետիս նախ օրհասական մանկանց և մարց և ապա առ եպիսկոպոսն քաղաքին, որ կայր Վաղարշապատ: — Կ'իջնէ հանդիսիւ մեծաւ կայսրն իր պալատէն 'ի տաճարն Աստուծոյ, — քահանայապետն անոր ճակատն օծելուն պէս, որ բորոտովին անսուրբ էր, բորոտութիւնը կը սրբուի. — ամէն կողմէն ուրախութեան և փառաբանութեան ձայներ կը բարձրանան, — կը մկրտուի ընկղմամբ, — աչքերը վեր առած կը տեսնէ Նորատանկ հողր մի, որ կը լնէր Երկրին վրայ. — կ'ելնէ յաւազանէն լի հաւատով, յուսով և սիրով. — շնորհակալ կ'ըլլայ նախ Աստուծոյ և ապա գերեաց առաջնորդին և իր մօրը: — Քահանայապետը կը հաղորդէ զնա կենարար մարմնոյ և արեան Տեառն. — կ'երթան առօք փառօք 'ի պալատն արքունի. — կայսրն կը բազմեցնէ գերեաց առաջնորդը՝ յաջակողմն սեղանոյն՝ առընթեր քահանայապետին. — Լուսոյ էջմիածինն կը գծէ տեղը, ընել ինչ որ բարին է և հաճոյ: — Կը բաշխէ նա հրամանաւ կայսեր զգանձն արքունի մարց և մանկանց սգաւորաց. — կը դատի խստութեամբ զՔաղդեայս. — կը յայտնէ բազմութեան առջև անոնց մոլորութիւնքը և կ'այրէ շինուած հնոցէ մի մէջ: — Կը կործանին կռոց տաճարները, — կը ջնջուի կռապաշտութիւնն, — հիմն կը ձգուի տաճարին Աստուծոյ, — բոլոր քաղաքն և աւանք ուրախակից կ'ըլլան քրիստոնեայ կայսեր, և օրհներգութեան ուղերձներ կը ղրկուին առ նա:

Ահաւասիկ Ցակ. Սրճեցւոյ ճառին պարունակութիւնն, զոր համառօտեցինք աստ, նախ մերայոց ծանօթացնելու, և ապա Սեղբեստրոսի Վարքէն ունեցած տարբերութիւնքն ակներև ընելու համար:

Իսկ Մ. Խորենացին՝ իւր պատմութեան Բ. գրոց ՁԳ. գլխուն մէջ ուզելով զուգել Կոստանդիանոսի ամուսնութեան տարեթիւը ընդ Տրդատայն, կը համառօտէ անոր պատմութեան մի քանի կէտերն և այսպէս. Կոստանդիանոս Կոստասայ Հոռոմոց թագաւորին որդին էր, կ'ըսէ նա, բայց ծնեալ ոչ եթէ Մաքսիմիանոսի դստերէն, այլ 'ի Հեղենայ պոռնկէ, — Կոստանդիանոսի ամուսնանալէն քիչ յետոյ՝ Կոստաս մեռնելով, նա կը յաջորդէ իր հօրը, հրամանաւ Դիոկղետիանոսի. — Թագաւորելէն յառաջ պատերազմի մի մէջ յաղթուելով, սաստիկ կը տրտմի, — քնոյ մէջ կ'երևի անոր յերկնից սուրբ նշանն՝ ոսկեղինման, որոյ վերայ գրուած էր. « Այսու յաղթեա ». — Կոստանդիանոս զայն նշան կանգնելով կը յաղթէ իր թշնամեաց. — յետոյ Մաքսիմինա կնոջմէն գրգռուած՝ քրիստոնէից դէմ հալածանք կը հանէ և շատեր կը նահատակէ. — այս բանիս 'ի պատիժ բոլոր անոր մարմինը Ելեֆանդական կոչուած բորոտութեամբ կ'ապականի. — Պարսկական կախարդներն և Յունական բժիշկներ չեն կարող բուժել զնա. — կը դիմէ նա առ Տրդատ որ-

պէս զի 'ի Պարսից և 'ի Հնդկաց դիւթեր յղէ առ ինքն. – կու գան, բայց 'ի զուր. – քուրմերէն ոմանք՝ դիւաց խրատով խորհուրդ կու տան կայսեր բազմաթիւ տղայս մորթել աւազանի մէջ և անոնց ջերմ արիւնով լուացուիլ և առողջանալ. – հրամանը կը կատարուի, բայց նա լսելով տղայոց և մարց ողբն ու լացը՝ կը գորովի, անոնց ազատութիւնը իր առողջութենէ լաւ համարելով. – որոյ 'ի փոխարէն տեսիլքի մի մէջ յԱռաքելոց պատուէր կ'ընդունի մկրտուիլ 'ի ձեռն Սեղբեստրոսի, որ հալածուելով Սորակտին լեռը պահուըտած էր. – կը հաւատայ 'ի Քրիստոս և կը ջնջէ բոլոր բռնաւորները:

Ինչպէս կը տեսնեն ընթերցողք, վերոյիշեալ յոյն և լատին աղբիւրներէն աւելի նոխ են Սրճեցին և Խորենացի. մանաւանդ վերջինս որչափ համառօտ՝ նոյնչափ ևս աւելի մանրամասն կէտեր կը ներկայացնէ Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի ստեղծաբանութեանց: Վիստոնեան եղբարցմէ և 'ի Հարց մերոց սկսեալ՝ գիտնականք առ հասարակ ուշադիր եղան այս բանիս: Ֆրոհթինգահմ և Դիւշէն՝ իրենց հրատարակութեանց մէջ դիտելով մէկ կողմէն Սեղբեստրոսի ստեղծաբանութեան արևելեան բնադրոշմը, միւս կողմէն ալ Սրճեցւոյ և Մովսիսի հնութիւնը, հոն յանգեցան, թէ այս երկու հեղինակներէս մին գրած ըլլայ Սեղբեստրոսի ստեղծաբանութիւնը. իսկ անոր նախկին խանձարուրքը դրին յԵդեսիա, կամ 'ի Մծբին: Մանաւանդ թէ Դիւշէն ենթադրելով որ Խորենացին անտարակոյս 451–455 ի միջոցը գրած ըլլայ իր պատմագրութիւնը, չտարակուսեցաւ առաջնութիւնը Մովսիսին տալու, այնու զի Սրճեցին 472 էն [1] տարիներ վերջ խօսած է իւր ճառը. բայց ասկէց ծագելիք դժուարութեանց առաջն առնելու համար, կը յարէ, թէ Ե դարուն Ասորւոց և Հայոց յարաբերութիւնք այնքան սերտ էին, որով միոյն մէջ կատարուած բան մի դիւրաւ կարող էր միւսին փոխանցիլ:

Ցիրաւի, եթէ Խորենացւոյ պատմագրութեան ժամանակամիջոցն՝ անոր Ա. գրոց Ա. գլխէն, և Գ. գրոց վերջին, այն է ԿԸ. գլխէն չափենք, շատ ճիշտ կ'ըլլայ Դիւշէնի եզրակացութիւնը՝ Մովսիսի առաջնութեան մասին. որովհետև Ա. գիրքը գրած ժամանակ՝ Սահակ Բագրատունին դեռ ողջ էր, հանդերձ Վարդանաւ. իսկ վերջին ողբն

1. Դիւշէն իր հրատարակութեան մէջ պատճառ մի չիտար ճառիս 472 էն վերջ գրուած ըլլալուն. իսկ Ֆրոհթինգահմ՝ Սրճեցւոյ ճառի այն բացատրութենէն, ուր յետ յիշելոյ զԵզեկիա, « O gran re Ezechia vieni e conduci con te la penitenza » etc. խօսքերով խօսքն առ ունկնդիրս ուղղելով՝ կ'ըսէ այսպէս․ “ Fin a l ora ho parlato con voi di molte storie, ma d' ora in poi una sarà la storia che tratteremo, parlerò molto sul proposito della penitenza per annunziarla chiaramente agli uditori „, և այլն. կը հետևցնէ, թէ Սրճեցին արդէն 'ի վաղուց քարոզներ խօսած էր, և թէ նորա առաջին քարոզը « Եզեկիէլի կառքին վերայ » տրուածն էր: Սրճեցւոյ անանուն կենսագիրն (տես Assemani Bibl. Orient. T. I. p. 28 - 289) կ'ըսէ, թէ Յակոբ իր կենաց 22 հասակին մէջ խօսեցաւ իր առաջին ճառը՝ Եզեկիէլի կառքին վերայ, և թէ նա ծնած է յամի Տեառն 452: Ուրեմն կենսագրի ըսածին նայելով, յամի Տեառն 474 պէտք է որ արտասանած ըլլար իր այն ճառը, ըստ Ասսեմանեայ 472: Եպիսկոպոս եղաւ 67 ամեայ հասակին մէջ և երեք տարիէն վախճանեցաւ, այսինքն է 521 ին: Ուրեմն կենսագրի աւանդած ժամանակագրութիւնն եթէ ստոյգ համարինք, պէտք է որ Կոստանդիանոսի վերայ խօսած ճառն ալ 474–518 ին եղած ըլլար. զի ըստ վկայութեան նորին իսկ Սրճեցւոյ՝ վերջինն եղաւ այն իր արտասանած ճառերուն, և անկէ վերջ եպիսկոպոսական գործերով զբաղեցաւ:

Բայց զայս ևս դիտելու ենք, որ Ասորիք յաճախ շփոթած են Յակ. Սրճեցին՝ միւս Յակ. Ծննդոցին հետ, որով միոյն ժամանակն և գործերն իսկ կարէին դիւրաւ շփոթած ըլլալ միւսոյն հետ:

յօրինած ժամանակ, դեռ Վահան Մամիկոնեանն իշխած չէր, ապա թէ ոչ Մովսէս պատճառ չպիտի ունենար գանգատելու, թէ « Մակարէ ոչ փրկէ. Եղիսէ՝ (այսինքն է կաթողիկոս) ոչ մնաց՝ կրկին հոգւով օծանել զՑէու ». վասն զի անկէց վերջ, այսինքն է 485 էն ասդին, Վահ. Մամիկոնեան արդէն փրկած էր զՀայս, և Յովհ. Մանդակունի կայր և օծանէր կրկին հոգւով, — այն է ուետարանին և հայրենեաց, — զիշխանը, Վաղարշապատու եկեղեցւոյ մէջ ըրած պերճաբան առեղախօսութեամբ մի: Բայց որովհետև անաչառ քննադատութիւնը՝ Մովսէսի վերոյիշեալ գլուխներն խսկ արդէն երկբայութեանց ենթարկած է, և այսօր իբրև ապացուցեալ ճշմարտութիւն ընդունելու ենք, թէ Խորենացւոյ պատմագրութիւնն՝ ոչ եթէ Ե. դարու առաջին կիսում, այլ 475—480 հազիւ աւարտած է. ուրեմն կարող էր նա նոյն խսկ Սրճեցւոյ յիշեալ ճառը կարդացած ըլլալ, եթէ ուրիշ հնագոյն աղբիւրներ անոր ծանօթ չլինէին: Այս բանս դեռ աւելի հաւանական կ'ըլլայ, եթէ ստոյգ է Թովմ. Արծրունւոյ և Անեցւոյն անոր համար աւանդածը, թէ Խորենոյ ծերոյն կեանքն և գրաւոր գործունէութիւնն՝ երկարաձգեցաւ մինչև Զենոն կայսեր օրերը, որ վասն և պատուական ծեր անուանուած է, որպէս երբեմն Ծերունին Սիմէոն:

Երկրորդ դիտելու ենք և այս, որ Օքսֆորդի Բոդլեան Մատենադարանի ասորերէն թիւ 153 Ձեռագրին մէջ, — յէջ 13—16, — Յակ. Սրճեցւոյ վերոյիշեալ ճառը՝ Ս. Եփրեմի Խուրին ասորւոյ ընծայուած է՝ այս մակագրութեամբս. « Ճառ 'ի Դիրաբնեան յաղթող Բարեպաշտին Կոստանդիանոսի. Տեառն Եփրեմայ Ասորւոյ (ասացեալ) վարդապետի և սեան ուղղափառ եկեղեցւոյ »: Յամին 1863 չտարակուսեցաւ բնաւ Օվըրբէք հրատարակել զայն Ս. Եփրեմի հատընտիր գործոց[1] մէջ. չնայելով որ Բիքէլ, ընդհակառակն, Սրճեցւոյն ընծայած էր զայն, հաստատուելով այն փաստին վերայ, թէ Եօթնական չափով գրուած չէ այն, զոր 'ի գործ ածէր Եփրեմ. այլ 12 ականն վանկաչափով զոր հնարեց Սրճեցին: Այս փաստս ստուգիւ եզրակացուցիչ է, եթէ իրօք Սրճեցիէն յառաջ առ Ասորիս բնաւ գոյութիւն ունեցած չէ 12 վանկաչափը: Բայց Նիրշլ[2] գիտնալով հանդերձ Բիկքելի այս ընծայութիւնս, ընտրեց դարձեալ Եփրեմի գործոց մէջ դասել զայն:

Արդ՝ 'ի նկատի ունելով Մովսէսի պատմագրութեան և Սրճեցւոյ ճառին վերաբերեալ այս կրկին և խնդրական պարագայներս, մենք հոս դիտաւորութիւն չունինք սնդելու, թէ Խորենացին անպատճառ Սրճեցիէն առած է իւր Բ. գրոց ՁԳ. գլխու տեղեկութիւնքն, այլ համոզուած եմք, թէ թէ՛ Սրճեցին և թէ մերս Խորենացի՝ Սեղբեստրոսի Հռովմայ ծանօթ գլուխներէն առած չեն իրենց տեղեկութիւնքը, այլ կամ անոր հինաւուրց բնագրէն, որուն կը հետևէին բազում եկեղեցիք, — ըստ վկայութեան Գելասիոսեան Ցանկին, և կամ Կոստանդիանոսի հնագոյն պատմութենէ մի:

Ցիրաւի առանձին ցուցմանց դեռ չձեռնարկած, նախ իբրև երկուքին վերաբերեալ և ընդհանուր եղելութիւն՝ դիտելու ենք, որ նոյն խսկ երկարաձգելով Սրճեցւոյ ճառի գրութեան ժամանակամիջոցը մինչև յամն 518, յորում կոչուեցաւ յեպիսկոպոսութիւն Բաղնայի, վերջ տալով իր ճառախօսութեանց, և Խորենացւոյ պատմագրութեանն՝ յամն 503, սակայն և այնպէս չէին կարող ականատես ըլլալ՝ ոչ նա սեղբեստրոսեան

1. Այս խորագրով. " S. Ephremi Syri, Rabulæ, etc. Opera Selecta „, Oxford. 1863, p. 355 - 361.

2. " Lehrbuch der Patrologie und Patristik „, Mainz 1883, B. II. s. 263.

Վարուց ասորերէն թարգմանութեան, և ոչ սա՝ յունարէն կամ հայեցի թարգմանութեան: Առ յոյժ արդեօք. վասն զի նախ, — ինչպէս ծանուցինք, — ըստ ընդհանուր կարծեաց քննադատից՝ լատին խմբագրութիւնն եղած է Զ. դարու առաջին քառորդին, իսկ յունարէն թարգմանութիւնն անկէց շատ տարիներ վերջ: Եւ որովհետև նոյնքան ստոյգ է, թէ ասորերէն թարգմանութիւնն ալ յետ ամաց՝ յունարէնի վրայէն եղած է, այսինքն է 530—550 ի մօտեր. իսկ Յակոբ Սրճեցին յամին 521 և Խորենացին 503 արդէն կնքած էին իրենց մահկանացուն. ուրեմն չկարէին կարդալ զայն և ոչ ալ տեղիս մէջ բերել:

Այս բանս այնու մանաւանդ աւելի կը հաստատուի, զի Յովհ. մականուանեալն Աւետեաց[1] և Դիոնեսիոս Թելմահրէ՝ յԱսորւոց, և Թէոփանէս՝ 'ի Յունաց շատ յուշ կու գան 'ի հանդէս. — այսինքն է առաջինը՝ Զ. դարուն վերջ, իսկ երկրորդն և երրորդն՝ յԸ. դարուն, — Սեղբեստրոսի Վարուց ասորի և յոյն թարգմանութեանց իբրև առաջին ներկայացուցիչներ. ուրեմն եթէ Զ. դարուն սկիզբն եղած ըլլային այն թարգմանութիւններն, կարելի չէ որ ամբողջ դար մի 'ի լռութեան մնային և առանց մէկէ մի յիշուելու:

Գալով ուղղակի Սրճեցւոյ ճառի պարունակութեանը, կը տեսնենք անոր մէջ երկու բնորոշ յատկութիւններ, որոնցմով Սրճեցին որչափ որ կը տարաձայնի Սեղբեստրոսի Վարքէն, նոյնքան ևս կը համաձայնի Զոսիմոսի աւանդածներուն: Արդ՝ որչափ որ ալ այլաբանօրէն նկարագրած է նա Կոստանդիանոսի կենսագրութիւնը, և այնպէս կան իսկապէս պատմական կէտեր, զորս նա ինքն ուզած է այնպէս ներկայացնել, — ինչպէս անոր նախերգանքէն յայտնի է: Ուստի նոյն իսկ այս պատմական կէտերուն և Սեղբեստրոսի Վարուց մէջ ահագին խորոց մի կը տեսնուի ակներև: Առաջին՝ դիտելու ենք, որ Սեղբեստրոսի Վարքն՝ Սեղբեստրոսով կը սկսի և կ'աւարտի, Կոստանդիանոսի մասը ոչ ինչ է. իսկ Սրճեցւոյն գլխաւոր նիւթն է Կոստանդիանոս. Կոստանդիանոսի պատմութեամբը կը սկսի և կը վախճանի, Սեղբեստրոս անուան բնաւ յիշատակութիւն չկայ: Բ. ըստ սեղբեստրոսեան ստեղծաբանութեան՝ Ս. Սեղբեստրոս է միակ գլուխ և գործի կայսեր դարձին, մկրտութեան և բարեզարդութեանց. իսկ ըստ Սրճեցւոյն, ընդհակառակն, ջերմոց Աստուածորդն է պատճառ այսմ ամենայնի, և գլխաւոր գործիչ, որ Կոստանդիանոսի դարձէն յառաջ իսկ ծանօթ էր նմա, և Զոսիմոսէն յիշուած Եկեղեցւոյն հետ նոյն է, այն ինքն է Սոփիա սպանիացին. Սեղբեստրոս միայն կը մկրտէ զնա: Սեղբեստրոսի Վարքը կ'աւանդէ, թէ Սեղբեստրոս այն ժամանակ փախած էր 'ի Սորակտէ լեռը. Սրճեցին, ընդհակառակն, կ'ըսէ, թէ կը գտնուէր յեկեղեցւոջ, երբ զկրեաց առաջնորդը զնաց մանկանց ազատութեան աւետիսը տալու, և հրաւիրելու 'ի մկրտել զկայսրն: Սրճեցւոյ մէջ բերած Կոստանդիանոսի առ մեծամեծս ուղղած նամակն ևս տարբեր յաղբերաց կը յառաջագայի. զի Սեղբեստրոսի վարուց մէջ անոր յիշատակութիւնն իսկ կը պակսի: Սրճեցւոյ ճառին մէջ կայսեր բորոտութիւնն 'ի ծնէ եղած կը պատմուի. իսկ Սեղբեստրոսի Վարքը՝ յետոյ առնեալ եղած կը համարի և 'ի պատուհաս՝ քրիստոնեաները հալածելուն: Վերջինս կ'աւանդէ, թէ 'ի Պարսից անտի հրաւիրեց զբժիշկս և զգէտս Կոստանդիանոս. իսկ Սրճեցին՝ 'ի Բաբելոնէ եկած կը համարի զՔաղդեայս: Սեղբեստրոսի Վարուց մէջ, եկեղեցւոյ պետն է, որ կը յորդորէ զկայսրն, — քաղցրութեամբ և ոչ պատուհասիւ, — յորդորել 'ի

1. Տես Միք. Ասորի. Cronique, traduit par V. Langlois, Venise 1868, p. 113.

դարձ զհեթանոսս և զհրէայս. Իսկ ըստ Սրճեցւոյ ընդհանրականին, զեւբեայց առաջ-նորդն անգթաբար Կայսր Հռովմայեցւոց Հոնորի ի ԴԿ։ Սեղբեստրոսի Վարուց համաձայն Հեղինէի դարձը Կոստանդիանուպոլսէն վերջ պատահել է: Իսկ Սրճեցւոյ ճառին մէջ, ընդհանրականն նա իբր 'ի վաղուց քրիստոնեայ՝ կը ջանայ որդին ևս դարձնել յայն, աշխատելով ընդ զեւբեայց առաջնորդին: Բաց յայսցանէ, դիտելու ենք, որ Սրճեցւոյ քով չկայ բնաւ յիշատակութիւն Կապիտոլիոնի այրին և վիշապին, — Հրէից հետ ըրած Սեղբեստրոսի վիճաբանութեան, — ցլու սպանման և Սեղբեստրոսի ձեռքով յարութիւն առնելուն, — պահոց և ապաշխարութեան, այլովքն հանդերձ: Ուրեմն այս և ուրիշ էական տարբերութիւններէն չափելով, կ'ըսենք թէ, Սրճեցւոյ աղբիւրն ոչ միայն տարբեր ըլլալու էր Սեղբեստրոսի ծանօթ Վարքէն, այլ թէ հաւանօրէն հե-թանոսական եղած է, որուն յայտնի ապացոյց է Զոսիմոսի հետ ունեցած մեծ նմա-նութիւնը, — կայսեր դարձի նկատմամբ:

Իսկ նկատմամբ Խորենացւոյ և Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգմանութեան, դիտելու է նախ, որ այդ թարգմանութիւնն եթէ յամին 690 Փիլոնի Տիրակացւոյ ձեռ-քով եղած ըլլայ, — զոյգ ընդ պատմութեան Սոկրատայ, — և եթէ անկէց 18 տարի յառաջ « Աբրահամ Գրիգորի Զօրափորեցւոյ » ձեռքով, — ինչպէս կ'աւանդէ Էջմի-ածնի Մատենադարանի գրչագրի մ'արձանագրութիւնն [1], — զրէթէ դարական խըռ-րոցին հեռի կ'իյնայ 'ի Խորենացւոյն. ուստի կը մնայ մեզ, — ըստ ոմանց, — կամ ընդունել Խորենացւոյ պատմագրութիւնը իբր ՅԸ. դարուն գրուած, և կամ որոնել ա-նոր ղեռ աւելի հնագոյն աղբիւրներ:

Առաջին կէտը մեզ համար այնքան անյարմար է և կամայական, զոր և ոչ իսկ մանրազնին քննութեան ենթարկել արժան էր, եթէ այլք այնքան կարևորութիւն տուած չըլլային: Արդ՝ անծանօթ Զորոփորեցւոյն և Փիլոնի Տիրակացւոյ ընծայուած կրկին թարգմանութեանց լեզուն և ոճն այնքան ստոր և տարբեր են Մովսիսի պատ-մագրութեան լեզուէն և ոճէն, որքան կապարն՝ յոսկւոյ անտի, և օտար լսելիք միայն կարեն շփոթել զանոնք ընդ իրեարս: Բ. Սեղբեստրոսի Վարուց այդ կրկին թարգմա-նութիւնքն՝ ըստ իս ոչ եթէ Է. դարուն, այլ հաւանօրէն Ժ — ԺԱ. դարէն յետոյ եղած են և Սոկրատայ թարգմանութեան հետ միացած. և հաւանօրէն այսպիսի զրական խարդախութիւն մի յաջողցնելու համար դուրս թողուած են յոյն պատմագրի Ա. գլուխ առաջին տասն գլուխները, պահելով անոր Ցառաջաբանը ԺԱ. գլխուն վերայ:

Թէ ստուգիւ Ժ — ԺԱ դար ծանօթ չէր Հայոց՝ Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգ-մանութիւնն, ունինք ապացոյց նախ ԺԱ դարէն վերջ եկող Ցայսմաւուրք, որք առաջին անգամ անկէց ամբողջական քաղուածներ կ'ընեն, մերթ բառ առ բառ, և մերթ իրենց ուզածին պէս յարմարցնելով. և հայերէնի մէջ չեղած մասունքն ալ՝ յունարենէն կը

1. Ցիշատակարանս՝ այն ձևով ինչպէս արտադրեց « Արարատ, թիւ Ա. 1893 — աղաւա-ղեալ կ'երևի, և կամ սխալ յառաջբերութիւն մ'ըլլալու է Աստղկայ այն տեղւոյն, — Բ. 2, — ուր Սոկրատայ պատմութեան թարգմանութեան համար ըսուած է, թէ կատարեցաւ Փի-լոնի Տիրակացւոյ ձեռքով և Ներսէսի Կամրջաձորեցւոյ պատրկի հրամանաւ. իսկ յիշեալ յիշա-տակարանն, — ըստ Փ. Տէր — Մովսիսեանի հրատարակութեան, — նոյն Կամսարականի հրամանով եղած կը համարի Սեղբեստրոսի պատմութեան թարգմանութիւնը, զոր կարելի չէ ընդունել, զի այն թարգմանութեանց միոյն լեզուն այնքան նոր է, որ և ոչ իսկ Փիլոնի կարելի է ընծայել, բաղդատելով նոյն իսկ անոր ձեռքով կատարուած Սոկրատայ շա-րաբանութեան հետ:

թարգմանեն: Միքայէլ Ասորին իսկ իր վերոյիշեալ տեղին կարծէք թէ հայերէն թարգմանութեամբը ճոխացուցած է: Երկրորդ՝ հայերէն թարգմանութեանց մէջ կան այնպիսի հատուածներ, որոնք կը պակսին յոյն և լատին թարգմանութեանց մէջ. այսպէս ալ վերջնոց մէջ կան շատ բաներ, զորս ՚ի զուր է որոնել հայերէնի մէջ. բայց ցայտնաւորք երբեմն զայն իսկ կը պարունակեն: Այս կարեւոր տեղերս ծանօթութեամբք մատնանիշ պիտի ընենք:

Սակայն ենթադրելով իսկ, թէ Սեղբեստրոսի Վարուց այն կրկին թարգմանութիւնք յէ. դարուն եղած ըլլան, — ինչպէս կ'ենթադրեն Կարրիէր և Փ. Տէր-Մովսիսեան, — ես պիտի ապացուցանեմ նոյն իսկ Սոկրատայ պատմագրութեան թարգմանութեան միջոցաւ, թէ այդ թարգմանութեան հեղինակն աւելի օգտուած է Խորենացւոյ պատմագրութենէն, քան թէ սա՝ անտի: Արդ թէ՛ Սոկրատայ թարգմանութեան, — յէջ 57–61 և թէ Խորենացւոյ Բ. գրոց ՁԶ երրորդ գլխուն մէջ Վրաց թագաւորին Միհրանայ դարձին, — Վրաց խաչին, — սրբուհւոյն Նունեայ, — Հռիփսիմեանց և այլ հատուածները իրարու համաձայն են: Այս անտարակուսելի է, թէ առաջին կէտը, այն է Միհրանայ դարձի պատմութիւնը թէ՛ Մովսէս և թէ՛ Սեղբեստրոսի Վարուց թարգմանիչը՝ Սոկրատայ յոյն բնագրէն օգտուած են կամ արտագրած, իւրաքանչիւրն իրեն յատուկ շարադասութեամբ: Իսկ մնացած կէտերն, այսինքն են Վրաց խաչին, — Իշխանաց հանած խոտվութեան դէպքին, Նունէ և Հռիփսիմէ անուանց որոշ յիշատակութիւնն, այսպէս նաև Գրիգորի «Գիրքն» կամ Ագաթանգեղոս՝ յոյն բնագրի մէջ բնաւ չկան, այլ կը գտնուին միայն Խորենացւոյ և Ս. Ղևոնդեայ թոռան Հայր Ահարոնի գրութեան մէջ, այն է ՚ի Պատմութեան[1] Աշխարհին Վրաց, — որ մի քանի տարի յառաջ յայտնուեցաւ: Ուստի պէտք է ըսել, թէ Սոկրատայ թարգմանիչն այդ տեղեկութիւնքը կամ Հայր Ահարոնի գրութենէն առած է, և կամ Խորենացիէն, — վասն զի Խորենացին ոչ յառաջնոյ անտի կրնար առնուլ և ոչ վերջինէն, ինչպէս ՚ի հետևեալն պիտի տեսնենք: Հայր Ահարոնէն չէր կարող առնուլ, որովհետև նա յամին 912 գրած է յիշեալ պատմութիւնը, և վախճանած է մօտ յամն Տեառն 931, այսինքն է Սոկրատայ թարգմանչէն երկու և կէս դար վերջ. ուրեմն կը հետևի թէ Խորենացիէն քաղած է զայնս, գրեթէ բառ առ բառ կրկնելով Մովսիսի ՁԶ. գլխու մէկ տեղին, ուր կ'ըսուի. «Կին ոմն, անուն Նունէ, յընկերաց սրբոց Հռիփսիմեանց, ՚ի ցրուելոցն, փախստեամբ հասեալ յաշխարհ Վրաց ՚ի Մծխիթայ, ՚ի քաղաքն նոցա նախագահ», և այլն:

Եթէ բաղդատենք Սոկրատայ թարգմանութեան ԺԶ գլուխն, — ըստ յուն. Դ և ԺԶ, — և Խորենացւոյ Բ. գրոց ՁԸ. գլուխն, ուր կը պատմուի Լիկկիանոսի կապուիլն և արքունեաց փոխադրութիւնն ՚ի Հռովմայ՝ ի Կոստանդինուպօլիս, ճիշդ մի և նոյն երևոյթը կը ներկայանայ դիմացնիս, ինչ որ նկատեց Կարրիէր՝ Սեղբեստրոսի Վարուց հայ թարգմանութեան և Խորենացւոյ յիշեալ գրոց ՁԳ գլխու համանիւթ հատուածոց մէջ: Սակայն կը յուսանք թէ աստ ոչ խոհեմազարդ Գաղղիացին պիտի փորձէ նոյնը եզրակացունել, և ոչ ալ Մալխասեան պէտք պիտի ունենայ անոր եզրակացութենէն խուսելու համար՝ Խորենացւոյ այդ գլուխն իսկ եկամուտ համարել. որովհետև հոս մի և նոյն բնագրէ, բայց տարբեր ժամանակի մէջ և տարբեր գրչով եղած բանահիւսութիւնք են: Դնենք այդ տեղերը դիմացէ դիմաց, հանդերձ յոյն բնագրաւ, իրին ճիշդ եղելութիւնը ներկայացնելու համար:

1. Տես «Այրարատ» Հ. Դ. Վ. Ալիշանի, Վենետիկ 1890, էջ 104–106:

### Խոր. Բ. Գլ. ՁԸ.

« Եւ իբրև յայտնեցաւ դաւն, և գիտաց թէ նմա լուռ ոչ լինի Կոստանդիանոս, ժողովեաց զզօրս ընդդիմանալ պատերազմաւ:...

Իսկ իբրև եկն յաղթողն Կոստանդիանոս, մատնեաց Աստուած 'ի ձեռս նորա զԼիկիանոս....

Եւ ինքն հանդերձ որդւովքն մի թագաւորութիւն զՀռովմայեցւոցն ցուցեալ, քսանամեակն 'ի Նիկոմիդացւոց քաղաքին կատարեաց:

Եւ ոչ պարտ վարկուցեալ 'ի Հռովմ դառնալ, այլ 'ի Բիւզանդիոն հաստատէր զարքունիսն, յանդիման ժամ Նախարարութեանց Հռոմայեցւոց. զերապայծառ առնելով շինուածս, հնգապատիկ յաւելեալ պայծառացուցանէ:

. . . . . . . .

Եւ սակս այնորիկ շինեաց յիշատակ իւր առացեալն Ստրատիգին. քանզի 'ի նմա զպատերազմականն յօրինեաց կազմութիւն:...

. . . . . . . .

Այլ Կոստանդիանոս անեղապատիկ յարդարեաց, և անուանեաց նոր Հռովմ, իսկ աշխարհն կոչեաց զնա Կոստանդնուպօլիս։

### Սոկրատ. Ա. Գլ. Դ. ԺԶ.

... « Ruptoque simulatæ amicitiæ fœdere hostes sibi mutuo facti sunt.. post tempore bello se invicem appetierunt.

Multisque prœliis terra marique consertis devictus Licinius, Constantino se dedidit...

Ita Constantinus totius orbis Romani imperium adeptus, *celebrata* igitur festivitate publica *vicennalium suum*...

. . . . . . . . .

tum in urbe sibi cognomine, quem quidem Bizantinum ante hac appellatam.

magnopere amplificatus, et ingente cinctam muris variisque ædificis exornatum,

Quæ quidem lex in columna lapidea incisa ac publice in *Strategio* juxta equestrem imperatoris ipsius statuam collocata est.

Constantinopolim nominavit, utque Nova Roma vocaretur.

### Հայ. Նորէմ. ԺԶ.

. . . . . . . . .
. . . . . . . . .
. . . . . . . . .
. . . . . . . . .
. . . . . . . . .
. . . . . . . . .

« Իսկ թագաւորն դառնայր յետ այսորիկ յարևմտից 'ի Կոստանդնուպաւլիս

'ի Ի ամի թագաւորութեանն,

և նորոգել... և զհամանուն քաղաքն իւր, մեծացուցանէր բարձր պարսպաւք և ամենապատիկ հրաշալի յաւրինուածովք գշինուածսըն յարդարէր. ըստ որոշման ցուցակաբերան Նոր, յաներևութից զերևելիս աբարեալ, առաւելեալ յամենայնի...

որ Կոստանդնուպօլիս քաղաք անուանեաց, երկրորդ Հռովմ տիրացոյց 'ի վերայ աշխարհին...

*Ասեն և զայս, թէ զաղտ‐նի եհան 'ի Հռովմայ* **[illegible]** *քերա‐ծոյ, և եդ զնա 'ի* **Փորփիւրն** *ներքոյ սեանն զառ 'ի յիւր‐մէ կանգնեալ. բայց այս մեզ անհաւատալի է, այլոց որպէս կամք իցեն »*

Certe Deorum simulacra ad ornatum urbis Constantinopolitanæ palam proposuit: et tripodas Delphicos in ejusdem civitatis circo publicavit, sed hæc quidem superfluo nunc videntur commemorari ».

*և զպատկերս կռոցն ըստ այլ քաղաքացն 'ի յոյժն հրամայէր յարմարել, և զդեղ* **Փոր(ր)ինեայն** *զեռեքոտանեայսն յասպարիզի քաղաքին հրապարակեալ դնէր. զայս այժմ աւելորդ է ասել զտեսեալս և զլսեալս »:*

*Արդ՝ չնայելով որ Խորենացւոյ գրչագրաց պէս՝ Սոկրատայ պատմութեան գրչագիրք ևս ժամանակաւ խանգարուած են, — ինչպէս կը ցուցնեն* **Եպիփան Սխոլաստիկոսի** *ընթերցուածները [1], — սակայն և այնպէս կը ցուցնեն, թէ հայ պատմագիրս կարդացեր է Սոկրատայ յոյն բնագիրը: Բաց անտի ծանօթ է Խորենացւոյ նոյնպէս հինաւուրցն Բիւզանդիոնի շինութեան* **Պալլադիոնն** *[2] ևս, իր վաղեմի արարուածովք, յորմէ քաղուած են* **Աղեքսանդր** *Սևերոսէն և Մակեդոնացւոյն մնացած յիշատակարաններն, զորս զանց ընելու ածել 'ի համեմատութիւն, վասն զի Սոկրատայ քով նման տեղեր չեն գտնուիր:*

*Բայց մեր խնդրոյն վերաբերեալ և կարևոր կէտ մ'է հայ թարգմանչի հետևեալ բացատրութիւնն, որ ուղղակի Խորենացիէն առնուած կ'երևի, զի յոյն բնագրին մէջ կը պակսի. «* **[illegible]** *, աներևութից զերևելիս արարեալ », բայց թարգմանիչն իր տափակ ոճով Երր. թղթի ԺԱ. 3 էն անյարմար բացատրութիւնն ևս կցած է անոր իր կողմէն: Սակայն Խորենացի իր պատմագրութեան ՁԸ. գլխուն մէջ այնու աւելի բաղդաւոր է, զի Սոկրատայ յոյն բնագիրն կեցած է իբրև խօսուն վկայ, ապա թէ ոչ դարձեալ պիտի ըսուէր, թէ այս տեղերս իսկ Մովսէս հայ թարգմանչէն առած ըլլայ:*

*Վերոյգրեալ համեմատութեան արդիւնքը՝ զօրեղ ապացոյց լինելով Խորենացւոյ առաջնութեան և հայ թարգմանութենէն անկախ լինելուն, տեսնենք այժմ, թէ անոր Բ. ՁԳ. գլխու պարունակութիւնն որքան աղերս ունի Սեղբեստրոսի Վարուց հետ:*

*Արդ՝ դիտելու ենք նախ, թէ ինչպէս Սրճեցւոյ ճառն, այսպէս ալ Խորենացւոյ այս գլուխս բոլորովին Կոստանդիանոսի պատմութեան վերայ կը դառնայ՝ իբրև առանցքի, Սեղբեստրոս լոկ իբրև միջանկեալ դէպք ինչ միայն յիշուած է անդ: Բ. Ինչպէս Սրճեցւոյն՝ այսպէս նաև Խորենացւոյ քով չկայ բնաւ յիշատակութիւն Կապիտոլիոնի այրին և վիշապին, Հրէից վիճաբանութեան, ցլու սպանման և վերկենդանութեան, Հռովմայ ժողովրդեան դարձին և մկրտութեան, և Սեղբեստրոսի ձեռքով կատարուած բարեկարգութեանց: Գ. Սեղբեստրոսի Վարուց յունարէն թարգմանութեան մէջ բնաւ յիշուած չէ Կոստանդիանոս իբրև ծնունդ Հեղինեայ պոռնկի. և սակայն Մովսէս այս մեծագոյն կէտովս իսկ կը տարբերի անկէց, համաձայնելով խոն Հերոնիմեան ժամա‐*

1 *Տես* Ed. Valesii 1717, p. 39.

2. *Մատենադարանիս Գ.* **[illegible]** *մէջ, — յէջ* 127. — *կայ հին թարգմանութեամբ «* **[illegible]** *» վեց թերթ գրութիւն մի. բայց աւելի վիպական է, և Խորենացւոյ աւանդածներուն անման;*

նակագրութեան և Զոսիմոսի, քան թէ Սեղբեստրոսի Վարուց: Այս էական կէտերս, որովք Խորենացի կը տարածայնի Սեղբեստրոսի Վարքէն, յայտնապէս կը ցուցնեն, թէ այն եղած չէ տիրապէս միակ աղբիւր Մովսէսի աւանդածներուն, այլ Կոստանդիանոսի կենսագրութիւն մի՝ Սեղբեստրոսի հետ ունեցած յարաբերութիւններով:

Արդ՝ 'ի նկատի ունենալով մէկ կողմէն ցայս վայր ըրած մեր քննադատութեան արդիւնքը, միւս կողմէն ալ Սեղբեստրոսի Վարուց ծագման, խմբագրութեան և թարգմանութեանց մասին գիտնոց մէջ անորոշ մնացած ծանրակշիռ խնդիրները, իցէ՞ բանաւոր մի քանի ալտաքնայարկար նմանութիւններէ եզրակացնել, թէ Խորենացին Սեղբեստրոսի Վարքէն ուղղակի առած է իր պատմագրութեան Բ. ՁԳ. գլխու տեղեկութիւնները. ապա ուրեմն անոր պատմութիւնը Ե. դարուն վերջը պէտք է որ գրուած լինի: Ոչ, բնաւ ամենևին: Այն եզրակացութիւնն, որ ստուգապէս կատարուած իրաց բնութենէ հանուած չէ, այլ յերկբայութեանց և յերևութից՝ չկարէ լինել ճշմարիտ և անդիմադրելի: Եւ սակայն գիտենք, որ Կարրիէր իր առաջին յօդուածը՝ ափ ափոյ գրելով՝ ուզեց պարզապէս Խորենացւոյ նոր աղբիւր մի յայտնել, Սեղբեստրոսի Վարուց յունարէն թարգմանութեամբ, առանց խորազնին քննութեան. բայց երբ արձագանգ գտաւ այն՝ ազգային քննասիրաց մէջ, այն ատեն խրախուսեցաւ պատմաբանի աչքով՝ վերստին քննութեան բովէ անցնել Խորենացւոյ աւանդածները. և պատմական չգտնելով զայնս, եզրակացոյց, թէ բոլոր այդ հակապատմական տեղեկութիւնքը Կոստանդիանոսի այն պատմութենէն առնուած են, զոր հայ թարգմանիչն իր կողմէն յօրինած և Սեղբեստրոսի Վարուց հետ միացուցած է:

Սակայն ընդունելով իսկ Կոստանդիանոսի պատմութեան գոյութիւնն իբրև ճշմարիտ, կ'ըսենք, թէ Կարրիէրի եզրակացութեան վերջին մասը սխալ է: Այո, այն օրէն 'ի վեր երբ Սոկրատայ ձեռագիրները Կարրիէրի ուսումնասիրութեաց յանձնեցի, հետամուտ էի Կոստանդիանոսի յիշեալ Պատմութեան հեղինակն և բնագիրը գտնել, համոզուած լինելով, որ այն պատմութիւնը բնաւ հայ թարգմանչի գործ չկարէր լինել: Ուրախ եմ որ հայ գրչագրաց միջոցաւ հասայ այդ ցանկալի կէտին. ուստի այժմ կարող եմ ըսել, թէ ոչ եթէ Սոկրատայ գրոց, կամ Սեղբեստրոսի Վարուց հայ թարգմանիչն եղած է հեղինակ Կոստանդիանոսի պատմութեան, այլ անկէց երեք դար յառաջ յոյն մի: Խորենացին, հետևաբար, զայն կը ճանչնար, և անկէ քաղած է զէթ Կոստանդիանոսի և Հեղինեայ և Կոստասայ մասին տուած տեղեկութիւնքը. հիմնուելով այն գործոյն աւելի հնութեան՝ քան թէ ստուգապատում ըլլալուն վերայ: Խորենացւոյ թարգմանաբար անկէց ըրած փոխառութիւնքը՝ թէ՛ ոճոյ գրութեամբ և թէ՛ ինչ ինչ պարագայներով շատ կը տարբերին Սեղբեստրոսի Վարուց հայ թարգմանութենէն, որուն զաղղիացի գիտնականը բնաւ կարևորութիւն տուած չէ:

Ո՞վ է, ուրեմն, այդ անծանօթ կարծուած՝ բայց բաղդաւոր հեղինակն, որով միայն անմեղ պիտի ելնէ Խորենացւոյ պէս պատկառելի ծերունին և իմաստուն Մենտորը՝ քննադատութեան խստապահանջ և միանգամայն բազմավրէպ ատենէն: Պարիզի Ազգ. Մատենադարանի թիւ 46 հայ Ձեռագիրն՝[1] յետ դնելոյ զԽորագիրս « Պատմութիւն[2] Կոստանդիանոսի Բարեպաշտի և մօրն նորա Հեղինեայ, առաջին քրիստոնեայց », անդէն կը

1. Տես Տօնացոյց մեծ. հտ. Բ:

2. Որ շատ պակասաւոր է 'ի սկիզբն և 'ի մէջն, չգիտեմ հնութեան, թէ ուրիշ պատճառաւ:

ծանուցանէ, թէ « Վասն ծննդեան Խըղորոսին պատմեցից 'ի գրոց սրբոյ վկային Եւ-սիգնեայ » : Այս անուանս հետքն անգամ չի գտնուիր բնաւ. հետևաբար գուշակեցի, թէ կամ Նւսեբիոսի և կամ ուրիշ անուան մ' աղաւաղեալ ձևն ըլլալու է այդ. և իրօք վանացս Ձեռագրաց մին, այս ինքն է, 'ի թու. Հայոց ՊՂ=1441 ին գրուած Ե. Յայսմաւուրքն, — զոր կը յիշէ նաև Առաքել պատմիչն՝ տեսեալ 'ի Սպահան, — յետ կարգելոյ 'ի 21 Մայիսի « Յիշատակ է Կոստանդիանոսի Թագաւորին և մօր Նորա Հեղինեայ », կը յարէ, — փոքրիկ յառաջաբանին մէջ, — թէ « Պատմեցից 'ի գրոց Եւսիգնեայ վկային ». և վեց ու կէս սեան մէջ կը պատմէ Կոստանդ Քլորոսի, Հեղինեայ և Կոստանդիանոսի արարուածները [1], զորս Սեղբեստրոսի Վարուց հայ թարգմանիչն իբրև Նախապատրաստութիւն՝ զետեղած է անոր սկիզբը, հակասելով իր գրած յառաջաբանին, որ կը սկսի այսպէս. « Սկիզբն Սեղբեստրոսի պատմութեան ա-ռաջնոյ », և այլն: Այս երևոյթս իսկ յայտնի ապացոյց մ'է տարբեր աղբիւրի մի ներմուծման. և այս ներմուծումնս կատարած է կամ իր գործին ամբողջ կենսագրութեան մ'երևոյթ տալու համար, և կամ անոր մէջ իսկ կար Սեղբեստրոսի վերաբերեալ մասն մի:

Եւսիգնէոս, — որ և՛ Հիսիգիոս, — է այն մեծ վկայն, որուն յիշատակը կը կարգեն Հայք 'ի 4 Յուլիսի, իսկ Յոյնք և Լատինք 'ի 5 Օգոստոսի: Հռովմէական Վկայաբանութիւնն, Յայսմաւուրք Յունաց, Հայոց, Սլաւո-Ռուսաց, և Արաբ-եգիպտական Վկայաբանութիւնն իրարու համաձայն կը հաւաստեն, թէ ստուգիւ նա 110 տարեկան հասակին մէջ հանգոյն Եղիազարոսի չուզելով զոհել կռոց, Յուլիանոս Ուրացողի հրամանաւ վկայեցաւ [2]: Յունահռովմէական անունս կազմուած է Eὖ և Signum, այսինքն է բարի-նշան՝ բառերէն, բայց չի գիտցուիր ինչպիսի՜ պարագայով մի: Այսչափս գիտենք, — 'ի վկայաբանութեանց, — թէ նա ինչպէս Կոստասայ Քլորոսի, այսպէս նաև Կոստանդիանոսի զինուորակից եղած էր խոշոր դրօշու ներքև, և հաւատարմութեամբ ծառայած էր անոր յաջորդաց մինչև ցՅուլիանոս: Բարոնիոս՝ [3] հաստատուած Գր. Նազիանզացւոյ մէկ վկայութեան [4] վերայ, կ'որոշէ անոր մահուան տարին յամի Տեառն 332, 'ի սկիզբն Յուլիսի: Իսկ Պագիոս 'ի Քննադատութեան անդ Բարոնիոսի՝ Օգոստ. 5 ին կատարուած կը համարի զնա և առաջին ընդ վկայեալս 'ի Յուլիանոսէ, 'ի զալ նորա յԱնտիոք:

Նախընթացի Գործքն, ուսկից հանուած է, — ըստ Յայսմաւուրաց, — Կոստանդիանոսի պատմութիւնն, կը գտնուին Վատիկանի Ձեռագրատան թիւ 866. fol. 356 յունա-

1. Որոնք տեղ տեղ կը տարբերին Սոկրատայ ձեռագրաց ընծայածներէն: Յօրինողն Յայսմաւուրքիս 'ի յունէ թարգմանելով ուղղակի, ուզած է ինչ ինչ կէտերու պատմական ձև տալ. օրինակի աղագաւ, Կոստանդիանոսի կինը Մաքսիմինա անուանելով կը յաւելու, թէ էր նա « Դուստր Մաքսիմիանոսի թագաւորին և քոյր Դիոկղետիանոսի »: Կոստանդիանոսի և Հեղինեայ վերջին գործերն ալ կը յիշէ, խառնելով յայնս Յակ. Մծբնացւոյ արարուածն ալ, — զոր յիշեն Բուզանդ և Ագաթանգեղոս, — և կը հասցընէ մինչև անոնց մահը. մինչդեռ Սոկրատայ Ձեռագրինը՝ Նախապատրաստութիւն համարելի է Սեղբեստրոսի վարուց, որ իրօք ճիշդ այն կէտէն կը սկսի, ուր աւարտած է Կոստանդիանոսի ծննդաբանութիւնն: Այս և նման երևոյթներ ուշագրաւ են յոյժ:

2. Տես Bolland. *Acta Sanct.* Aug. T. II. p. 70. — Հ. Մկ. Աւգերեան, Լիակատար Վարք Սրբոց, Վենետ. 1810:

3. Annal. T. IV. ad annum 362.

4. Հատ. Ա. ճառ Գ. էջ 91, ըստ Պարիզի հրատարակութեան 1609:

րէն հին գրչագրին մէջ: Աստ 'ի միջի այլոց կ'աւանդուի, — 'ի դիմաց Նախիգնիոսի, — առ Սարկաւագն Անտիոքացի Եւստաթէոս, կամ ըստ յուն. Նեստորիոս, հրատարակել իր գործերը, զորս արդէն 'ի գրի առած էր ինքն. և Նեստորիոս իր կողմանէ կը յորդորէ զնա 'ի մարտիրոսութիւն, խոստանալով թէ անոր ուզածին պէս պիտի կատարէ:

Կշռադատն Լամբէկիոս [1] արդէն ապացուցել է, թէ այդ գործերն ոչ Նախիգնիոսի կարեն լինել, և ոչ Նեստորիոսի Անտիոքացւոյ. վասն զի այնպիսի ժամանակագրական սխալներ կը գտնուին անոր մէջ, որք ժամանակակից գրողի մը համար անհասկնալի են: Օրինակի աղագաւ, կ'ըսուի, թէ 'ի հիւպատոսութեան Աքիլլէոսի և Դիոկղետիա- նոսի՝ մեռաւ Կոստանդ, որդի Մեծին Կոստանդիանոսի. մինչդեռ Արքեսիոս ոչ երբէք Դիոկղետիանոսի, այլ Լիւլիանոսի հետ վարած է այն իշխանութիւնը, յամի Տեառն 355: Այսպէս փոխանակ Կոստանդեայ՝ Կոստանդիանոս գրուած է: Ուստի իրաւամբ կը հետևցնէ Լամբիկիոս, թէ այն գրուածքի հեղինակն Կոստանդնուպօլսոյ ուրիշ Նեստորիոս սոփեստէս մ'է, որ կը ծաղկէր Կոստանդիանոսի որդւոյն Կոստանդեայ և Յուլիանոսի ժամանակ: Դիտմամբ Նախիգնիոսի ընծայած է նա իր գործը, որովհետև այս սուրբ վկայն 'ի Կեսարիա Կապադովկացւոց նահատակուած է՝ Յուլիանոսէն:

Սաուզիւ Լամբիկիոսի այս կարծիքս ուրիշ երկու փաստեր իսկ քաջ կը հաստա- տեն: Ա. Սուիդաս՝ ի Մատենագրութեան յիշում կ'ըսէ, թէ «Կապադովկացի ոմն Եւսեբիոս, — 'ի ժամանակս Կոստանդեայ կայսեր գրեաց զԵկեղեցական պատմութիւն Կապադով- կացւոց և այլոց ազգաց»: Բ. Նախիգնիոսի ընծայուած գործոց հեղինակն ինքնին կը վկայէ, — յէջն, 114, — թէ «Ես մեղապարտ Նեստորիոս՝ որ եմ ընկեր (համշիրակ) երանելւոյն Նախիգնիոսի, առանց յաւելլոյ և յապաւելոյ գրեցի զԳործս նորա, զորս եպիսկոպոսապետն մեր Բերիոյ, յետ խնամով ընթեռնլոյ՝ եդ 'ի գրատան անդ»: Անտարակոյս այս տեղ յիշուած Բարսեղն Կեսարացին ըլլալու է, և ոչ թէ Անտիոքա- ցին, որ յամի Տեառն 456 ին եպիսկոպոս եղած և 458 ին վախճանած է: Այս կեր- պով յիշեալ Նեստորիոսն ոչ միայն Կապադովկացին պէտք է որ ըլլայ, այլ նոյն իսկ Յուլիանոսի կամ Վաղեսի թերևս ժամանակակից:

Նեստորիոսի գրութիւնն ամբողջապէս աչքի առջև չունենալով, չենք կարող որոշել, արդեօք նա Արիոսեան կամ նոր պղատոնական դպրոցէ գրիչ մ'էր, թէ ընդհակառակն յուղղափառաց անտի: Այս խնդիրս իսկ մեզ համար երկրորդական նշանակութիւն ունի, թէ Նախիգնիոսի ընծայուած պատմութիւնն անհարազատ է, և ոչ ազատ 'ի պատմական և ժամանակագրական վրիպակաց. այլ բաւական է, որ գրուած է Դ. դարում և ծանօթ Արևելեայց: Հաւանօրէն Զոսիմոս և Հերոնիմոս իսկ կարդացել է- ին զայն, զուցէ թէ Կոստանդիանոսի ծննդեան մասին եղած նշանաւոր տեղին, այ- լովք հանդերձ, անտի առած են: Քանզի՞ն ապա ուրեմն Մ. Խորենացի, որ կենդանի մատենադարան մ'էր հելլէն դպրութեան, և ամէն գրուածք՝ կրկտած և պրպտած էր, կարող էր անկէց օգտուիլ, և օգտուեցաւ իսկ: Խորենացին կ'ըսեմ, որ այլուր իսկ այս տեսակ յոյն աղբերաց հետևող եղած է: Կը ցավինք որ ցկէտ գրութեանս չկրցանք Նես- տորիոսի յոյն բնագրի ընդօրինակութիւն մի ձեռք բերել և համեմատել ընդ Խորենա- ցւոյ, որով ամենայն ինչ պիտի լուծուէր միանգամ ընդ միշտ: Հ. Գարեգին Զարբհանա- լեան վերջերս կը տեղեկագրէր ինձ 'ի Հռովմայ, — ըստ խնդրանաց իմոց, — թէ պատմու- թիւնն այն կը բաղկանայ «հինգ մեծ և անփոփ իշխից հնագոյն գրչագրին, որոյ խո-

1. Commentarii de Bibl. Cæsarea Vindobonensi Lib. 8, 103 - 115.

բազիրն է. Μαρτύριον τοῦ ἁγίου καὶ ευδόξου ἀθλοφόρου Εὐσεγνι .ẋ. οὗ εὐλόγισον πε̃ρ. .ẋ., ընթերցեալ որչափ ինչ մարթ էր, տեսի զի, զԿոստանդիանոսէ և զՅուլիանոսէ բանք լինին » : Ճառիս համառօտութենէն դատելով, այնպէս կ'երևի, թէ աւելի Ս. Եւսիգնիոսի՝ քան թէ Կոստանդիանոսի կենսագրութեան վերաբերեալ մասն ըլլայ այդ:

Սակայն մի այլ անանուն գրութիւն [1], զոր Էդուարդ Հայդենրայխ, յամին 1879, հրատարակեց 'ի Լայպցիկ, խորագրաւ. « *Incerti Auctoris de Constantino Magno ejusque matre Helena libellus* ». և կը խօսի Կոստանդիանոսի ծագման վերայ: Կարելի էր Եւսիգնիոսի, կամ լաւ ևս Եւտրոպիոսի գրութեան հետ նոյն համարել, եթէ Հեղինեայ ազգաբանութեան վերայ տուած տեղեկութիւնքը բոլորովին չտարբերէին անկէ: Անանուն գրիչս կ'աւանդէ, թէ Հեղինէ ծագմամբ Տրեւիրէ քաղաքէն էր, ազնուական և քրիստոնեայ ծնողաց զաւակ. – սրբոցն Պետրոսի և Պօղոսի գերեզմանին ուխտի եկած էր 'ի Հռովմ, իր ընկերաց հետ, երեսօք յոյժ գեղեցիկ: Կայսրն Կոստանդ՝ օր մի Տիբերիսի կամուրջէն անցած ատեն՝ կը տեսնէ զգեղանին Հեղինէ, կը յափշտակուի անոր սիրով. – մարդիկ ղրկելով անոր բնակած տունը՝ ննջութեամբ յարքունիս տանել կու տայ և կը կատարէ իր կամքը: – Կուսանն Հեղինէ անարգուած տեսնելով զինքն 'ի թագաւորէն կ'ողբայ մեծաձայն. – կայսրը մխիթարելու համար՝ պարգևներ կ'ընէ անոր: Նա չուզեր դառնալ իր հայրենի քաղաքը, կը բնակի 'ի Հռովմ՝ բարեպաշտ մէկու մը քով, զոր կը զարմացնէ իր ազնիւ քաղաքավարութեամբ. – ժամանակ անցնելէն վերջ կը ծնանի Հեղինէ արու զաւակը, և կը կոչէ զնա Կոստանդիանոս: – Այս ժամանակ մեծ պատերազմ կը բացուի Հռովմայեցւոց և Յունաց մէջ. – Հռովմայեցի երկու հարուստ վաճառականներ, որոնք Յունաց կայսեր հետ սերտ բարեկամ էին, կը տեսնեն օր մի զգեղանի պատանին Կոստանդիանոս տասնամեայ, – կ'իմանան անծանօթ հօր որդի ըլլալն, – կը խորհին դաստիարակել զնա, – կը տանին առ արքայն Յունաց, – կը համոզցնեն զնա, թէ Հռովմայ կայսեր որդին է, – եկած է առնուլ զդուստր Տեառնդ արքայի. – մեծամեծաց խորհրդով կը կատարուի հարսանիքն, և արքունի գանձուք մեծացած՝ կը մեկնին դէպ 'ի Հռովմ. – վաճառականներն ուզելով կորուսանել զարքայորդին, կը խոտորին 'ի կղզի ինչ, ուր կը գիշերօթեն նոր ամուսնացեալք կատարելու իրենց մեղրալուսինը. – վաղիւն կանուխ կը մեկնի նաւն, և անոնք այն անմարդաբնակ տեղը մեռնելու դատապարտուած են. – յաւուրն երրորդի կ'անցնին անկէ ուրիշ նաւորդներ, և անոնցմէ իմանալով իրին եղելութիւնը, կ'առնուն զանոնք 'ի նաւն և կը հասնին 'ի Հռովմ: – Կոստանդիանոս իր ամուսինը կը տանի շիտակ այն տունը, ուր Հեղինէ կը բնակէր Սէսսորէյանում, – կը պատմէ իր մօրը վաճառականաց չար դիտաւորութիւնն և Արևելից կայսեր փեսայանալն. – կ'աղչի կը մնայ պահ մի Հեղինէ, և ապա համբուրելով իւր

1. Որ բաղկացած է ութածալ 30 երեսներէ, և գրուած է 'ի լատին բարբառ: Պր. Կարրիէր յղեց առ իս, որ վասն հրապարակաւ կը յայտնեմ իմ շնորհակալութիւնս: Գրչագիրն՝ զոր Նդ. Հայտէնրայխ D տառիւ նշանակած է, կը գտնուի ի Մատենադարանին Տրեւիրոյ, թիւ « J. 46 », որ գրուած է 'ի ԺԴ դարուն: Թ և Ժ թերթերուն մէջ գրուած է. « Cronica principum Misnensium », (տես Menkenius, *Script.* rer. Germ. III. p. 346). Նոյնը պարունակող ուրիշ գրչագիր մ'ալ կը գտնուի Փրեյբուրգի ալբերտինեան Մատենադարանին մէջ, սաքսոնական տառիւս F, որ ըստ Հայտէնրայխի՝ ԺԵ դարուն գրուած է: Ի վերջ կոյս գրչագրիս գրուած հետևեալ տեղեկութիւնն իսկ, « *Explicit* historia Constantini Imperatoris Romanorum et Grecorum », կը թուի հաստատել, թէ գրութեանս անյայտ հեղինակն լուսաբանելու համար Կոստանդիանոսի և Հեղինեայ պատմութիւնը՝ յաւելուած ինչ կամ փոփոխութիւններ ըրած է:

որդին և նուն՝ կը մխիթարուի յոյժ յոյժ: Հեղինէ կը խորհի ներկայացնել զԿոստանդիա֊նոս՝ Կայսերն Հռովմայ իբրև որդի, բայց կը վախէ մի գուցէ այնպիսի յայտնութիւն մի ըլլայ ՚ի կորուստ իր որդւոյն. — կ՚ապաւինի ջերմ աղօթիւք առ Աստուած. — Կոս֊տանդիանոս իր զինուորական մրցութիւններով մեծ անուն կը հանէ Հռովմայ մէջ. — կը հասնի Կոստանդ կայսեր ծննդեան օրը, — կը կատարեն զօրականք զինուորական մեծ հանդէս. — յաղթող կը հանդիսանայ Կոստանդիանոս յամենայնի. — կը զարմա֊նայ Կոստանդ անոր վերայ, — կ՚ուզէ գիտնալ անոր որուն որդի ըլլալը, — կը կոչուին Կոստանդիանոս և Հեղինէ, և յետ երկայն հարցափորձի, կը ցուցնէ կայսեր՝ ժամա֊նակաւ իւրեն տուած մատանին և հանդերձը. — կը յայտնուի ամէն բան, — որով կը սպանուին վաճառականները, — պաշտօնապէս ժառանգ կը ճանչցուի Կոստանդիա֊նոս կայսերն Հռովմայ. — դեսպաններ կը ղրկուին առ արքայն Յունաց, — նորանոր յարաբերութիւնք կը հաստատուին երկուստեք, և Կոստանդեայ Քլորոսի կը յաջորդեն Կոստանդիանոս և Հեղինէ: — Իսկ թէ ինչպէս կը միապետէ Կոստանդիանոս յետ մա֊հուն Կոստանդեայ, — ինչպէս կը բժշկուի ՚ի բորոտութենէ, Սեղբեստրոսի ձեռքով, և կը յղէ զՀեղինէ յԵրուսաղէմ ՚ի գիւտ սրբոյ խաչին, « require կ՚ըսէ անանուն հեղի֊նակս, in suis locis »:

Արդ՝ դիտելու ենք, որ բաց ՚ի Հեղինեայ ազգաբանութենէն և վաճառականաց ասեղ֊ծարանութենէն, — որք յետոյ ուրեմն ներմուծած են ՚ի լատին հեղինակէն, — այլ ա֊մենայն քաջ կը միաբանին Կոստանդիանոսի հնագոյն պատմութեան, ուրեք ուրեք բառ առ բառ. և չենք տարակուսիր բնաւ եզրակացնել, թէ անոր վրայէն կատարուած ազատ թարգմանութիւն մ՚է, ԺԱ դարէն վերջ: Յիրաւի, « baronibus nobilibus » բառերն իսկ կը ցուցնեն, թէ այդ լատիններէնը միջին դարէն յառաջ գոյութիւն չունէր, ինչպէս նաև Պարոն պատուանունն: Հաւանական է որ Խաչակրաց զԿ. Պոլիս գրաւած ժամանակամիջոցին կատարուած ըլլայ այդ թարգմանաբար յօրինուած գրութիւնն, և ապետական ոգւոյ ներշնչութեան ներքև՝ այն վիպասանական երևոյթն առած:

Իսկ որ ինչ Սորակտեան լերան և Սեղբեստրոսի հոն փախչելուն կը վերաբերի, կարող էր Մովսէս Հռովմայ այցելած ժամանակ իսկ հարցմամբ տեղեկանալ. այնու մանա֊ւանդ զի Ս. Սեղբեստրոսի յիշատակը սերտիւ կապուած լինելով Հայոց լուսաւորու֊թեան Ս. Հօրն՝ Գրիգորի հետ, հետևաբար Խորենացին իսկ հոն եղած ժամանակ, անոր յիշատակարանները աւելի տեսնել և ուսանել ջանացած պիտի ըլլայ: Այսպիսի եղելութեան կռուան մի կարէ լինել նոյն իսկ Սորակտեան, որ բացատութիւն մ՚է առ Խորենացւոյ, և Սորակտ հնագոյն անուան՝ յունաձև բարդութիւնն, որ, ըստ վկայու֊թեան Դիւշէնի, ճշմագոյնն է և ժողովրդեան բերանը կը շրջէր ՚ի հնումն:

Արդ՝ որչափ որ Կոստանդիանոսի պատմութեան բնագիրը չունինք ՚ի ձեռին, սակայն Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգմանութեան համեմատութենէն իսկ կարենք իմանալ Խորենացւոյ Բ. ՁԳ. գլխու տարբերութիւնքը, զորս երկուքի կը վերածենք. Ա. Շարաբանութիւնն, որով Մովսէս գլխովին անկախ և վեհագոյն կը հանդիսանայ՝ քան զհայ թարգմանիչն: Բ. Յատուկ անուանք և պատմական ակնարկութիւնք, որք աղ֊բեւաց տարբերութեան արդիւնք[1] համարելի են, և ոչ թէ գրչագրաց, — ինչպէս են֊

1. Օրինակի աղագաւ փոխանակ յուն. Ταρπεῖος ի՝ Տարոն կը գրէ հայ թարգմանիչն. Ταρκυίνος ը՝ Կուրքինոս, Εὐφρόσυνος ը՝ Անտոնիոս, ἀρίολος ը՝ տրախտոն, μαρσικοί տրեմտրեխն, Μαξιμίνας՝ Մաքսիմինոս, և այլն:

